ՀՐԱՆՏ ՆԱԶԱՐԵԱՆՑ

# ԵՂԻԱ ՏԷՄԻՐՃԻՊԱՇԵԱՆԻ ՍԻՐԱՅԻՆ ՆԱՄԱԿՆԵՐԸ
## 1886-1889

ԵՐԿՈՒ ԻՆՔՆԱՏԻՊ ԼՈՒՍԱՆԿԱՐՆԵՐՈՎ
ԵՒ ԻՐ ՁԵՌԱԳԻՐ ՄԷԿ ՆԱՄԱԿՈՎ

1910

ՏՊԳՐ. Վ. ԵՒ Հ. ՏԷՐ-ՆԵՐՍԷՍԵԱՆ
Կ. ՊՈԼԻՍ

ԵՂԻԱ ՏԷՄԻՐ

# ՍԻՐԱՅԻՆ ՆԱՄԱԿՆԵՐԸ

## ՀԵՂԻՆԱԿԻՆ ՀՐԱՏԱՐԱԿԵԼԻ ԳՈՐԾԵՐԸ

ԼԷՅԼԱ. — ՍԵՒ ԵՐԳԵՐ. (*Քերթուածներ*)

ՋԱՐ ՀՈՎԵՐՈՒՆ (*Քերթուածներ*)

ՓԱՌՔ ՅԱՂԹՈՒԱԾՆԵՐՈՒՆ (*Քերթուածներ*)

ԹՕՄԱՍ ԿՐԷՅԻ ԵՂԵՐԵՐԳԸ (*Քերթուած*)

ԵՂԻԱ ՏԷՄԻՐՃԻՊԱՇԵԱՆ ԵՒ ԷԼԷՆ ՆԻՍԸՆ

(*Կենսագրական ուսումնասիրութիւն*)

## ՀՐԱՏԱՐԱԿՈՒԱԾ Է՝

ՀԵՐԱՆՈՒՇ ԱՐՇԱԿԵԱՆ. — *իր կեանքն ու բանաստեղծութիւնները։*

**Գին 2 1/2 Ղրշ.**

ՀՐԱՆՏ ՆԱԶԱՐԵԱՆՑ

# ԵՂԻԱ ՏԷՄԻՐՃԻՊԱՇԵԱՆԻ ՍԻՐԱՅԻՆ ՆԱՄԱԿՆԵՐԸ

## 1886-1889

ԵՐԿՈՒ ԻՆՔՆԱՏԻՊ ԼՈՒՍԱՆԿԱՐՆԵՐՈՎ
ԵՒ ԻՐ ՁԵՌԱԳԻՐ ՄԷԿ ՆԱՄԱԿՈՎ

Կ. ՊՈԼԻՍ

Տպագր. ՏԷՐ-ՆԵՐՍԷՍԵԱՆ

1910

# ՄՈՒՏՔ

## I

ԵՐԿՈՒ տարի կ'ընէ արդէն որ փակուեցաւ գերեզմանը գրչի այն մեծ մարտիրոսին որ «Աստուծոյ ու մարդոց դէմ քէն բռած» Ասմալը-Մէսճիտի իր բաղեղնապատ մենարանին առաստաղէն կախեց ինքզինքը, իր բազմաչարչար գոյութիւնը յանձնելու համար Նիրվանայի երանաւէտ հանգիստին՝ անաղաւօտ անդորրին, այնպէս ինչպէս երեւակայած ու տեսած էր զայն իր արուեստագէտի բարձր հոգին։

Եղիա Տէմիրճիպաշեան որ աւելի քան քառորդ դար մը գրական անօրինակ ու հոյակապ բեղմնաւորութեամբ ծաղկեցուց Հայ Մատենագրութիւնը ու ժամանակակից գրականու-

թեան էն սիրուած բանաստեղծը եղաւ, խորապէս ազդելով միտքերու վրայ իր տեսանողի ուժգնութեամբ, տիրապետող իմաստասէրի մռայլ խոկումներով ու թովիչ հագներգուի հրաշալի քնարերգութիւններով, այսօր գրեթէ մոռցուած դէմք մըն է, այն ապերախտ անտարբերութեամբ որով կը վարձատրէ, գրեթէ միշտ, հայ հասարակութիւնը իր գրչի վաստակաւորները։

Ժամանակակից Հայ բանաստեղծութեան պատմութիւնը իրմէ հսկայ ու շքեղ գիսաւոր մը չունեցաւ արձանագրելիք իր վտիտ էջերուն մէջ։

Եթէ դառն անտարբերութիւնը ունեցանք իր կենդանութեան վերջին տարիներուն զինքը մոռացութեան մութին մատնելու, գէթ անխուսափելի վերյիշումով մը արժանիքներու՝ գիտակից մտածումը պէտք է ունենայինք բաւական ազնիւ ըլլալու իր գերեզմանէն ասդին, երբ այլեւս լռած են իր մեծ լացողի պզտիկ քէները, եւ յարգելու իր յիշատակը անկողմնակալ, խնամուած ուսումնասիրութիւններով որոնք զինքը ներկայացնէին այնպէս ինչպէս որ էր, եւ գեղարուեստական կոթողով մը որ իր տարփողած արուեստը մշտնջենաւորէր։

Այս եղական Մարդը, այնքան հանրագիտակ միտք որքան հանրազգած սիրտ, տար-

օրինակ չեղումով մը իր ապրած ընկերու-
թիւններէն, ադամանդական տագնապալից
կեանք մը ունեցաւ, յուզումնալից զրկում-
ներով լեցուն թափառումներ, մի՛շտ Գեղեց-
կին անունով զոր կ'զգար իր մէջ, սկսելով
«Պոսֆորի ափունքէն մինչեւ Լեմանայ ափուն-
քը, Ոսկեղջիւրի բլուրներէն մինչեւ Եունկ-
ֆրաու անմահասարը, Մօտայէն մինչեւ Ուշի,
բոլոր ճամբաներուն վրայ, բոլոր կայարան-
ներուն մէջ, բոլոր օթեւաններուն դուռը,
Պալքաններու ճերմակ պսակներուն հանդէպ,
Վեննայի վեհափառ Ս. Ստեփաննոսին սիւներ-
ներուն ներքեւ, Դանուբին ու Հռենոսին եր-
կայնքն, 'ի Մարգարտակղզին և 'ի Շէօն-Պրուն,
Գօշութ Լայօշի մահարձանին ու Ժ. Ժ. Ռու-
սօի արձանին առջեւ», ամէ՛ն տեղ ուր քշեցին
զինքը իր գեղապաշտ հրդեհումները, իր հա-
մամարդկային վերացումները, իր տիեզերա-
կան տեսիլքները, մերթ Ֆաքիրի ցուպը ձեռ-
քին՝ իբրեւ մարմնացում զրկուած Աղքատու-
թեան. մերթ Մելանիայի ու Նուրանիայի շըր-
ջազգեստով՝ դժգոհ ընկերութիւններէն և բո-
լոր տրուած բաներէն. մերթ Գրասէր Ատոմի
լեռնագէտ բարբառով, որ հասարակ ժողո-
վուրդներէն մինչեւ ամենաբարձր անհասանե-
լուն իմացականութեանը կը խօսի, արժանիք-
ներու դասակարգութիւնները կը դարմնէ, իր
բաղդատութիւնները կը լուսօրինէ, և ապ-

գային նորազարթ հպարտութեան մէջ կը թափէ եւրոպական ճանաչումը. մերթ Հուր-Հայրանի բոցեղէն շապիկը հագած իբրեւ նոր Զայլտ Հարօլտ մը որ «մութին հրայրքներով» իր սիրտը կրծող տարակոյսի գիշերները կը քնարերգէ, Մոտա-Պուրնուի զմայլելի վերջալոյսներուն աճիւնին մէջ Աստուա՛ծ հարցապընդելով. մերթ Ազատախոհեանի մը յանդուգն թափառումներու երկաթագամ կօշիկները հագած Դրականութեան բիրտ ճամբաներուն վրայ, Աստուած բառը մէկ շուրթին, Լիւդրէ անունը միւս շուրթին վրայ դողդոջուն. եւ վերջապէ՛ս Եղիան՝ իր ամենաիրական ձեւին մէջ, Ասմալը-Մէսճիտի՝ իր վերջին խաւարչուտ օթեւանին մէկ անկիւնը —Սուրբ Հեղինէ՛ն իր կամաւոր աքսորին— իր քնարերգած մեծ Զէրօին ձեւը տուած իր անձնասպանութեան պարանին՝ անոր մէջ կը դնէ իր յոգնաբեկ վիզը, պատրաստելէ վերջ ուրիշ պարապ կախաղանի հետք մը, ուրկէ կախուած պիտի ըլլար արդէն, եղբայրական յուսահատութեամբ, իր Սէրը, իր Իտէալը, իր երազերգած Կինը, այլեւս իրմով անշնչացա՛ծ, անիմա՛ստ:

## II

Եղիային արկածախնդիր եւ թափառիկ կեանքին մէջ եզական էջ մը կը գրաւէ այն շրջանը զոր 1886էն 1889ը ապրած է մեծանուն Ֆաքիրը՝ սիրային յարաբերութիւններու յանձնուած։ Այդ շրջանը որ կը կազմէ Եղիայի սիրային կեանքի մէկ դրուագը — որովհետեւ ան միակը չէ եղած — արտադրել տուած է իրեն զմայլելի գրական էջեր նամակագրութեան ձեւով, ուղղուած իտէապաշտօրէն սիրուած աղջկան մը՝ Սրբուհիին։ Անոնց մէջ Եղիա կը ներկայանայ իմաստասիրող բանաստեղծի բարձր թռիչքով զոր Սէրը ալ աւելի վսեմացուցած է։

Ամէն անոնք որոնք Եղիան պիտի կարդան՝ պիտի գտնեն այդ նամակներուն մէջ Նիրվանային գաղափարովը տուայտող բայց նաեւ կեանքի տենչանքին համար հատնող բանաստեղծին հոգեկան վրդովումներուն սրտաճմլիկ զգայութիւնները։

Եղիա բուռն իտէապաշտ ու իր Եսին բոցեղէնութեամբը գրաւուած սիրող մըն էր։ Այն կրակէ ու մոխիրէ, արցունքէ ու երազէ, ատելութենէ ու սէրէ, անկումներէ ու բարձ-

բացումներէ կազմուած հրաշալի խառնուածքը, որ Եղիային սիրուն էր, կը տեսնէր ամէն ինչ իր Եսին բոցին մէջէն։

«Գեղեցիկ երազներ չինել և զանոնք իրա-գործուած տեսնել առաջին ու անխուսափելի պայմանն է մեծ սրտերու, ինչպէս կ'ըսէր Միւսէ իր առ Էմէ տ'Ալթօն ուղղած սիրային նա-մակներէն մէկուն մէջ, ինչպէս նաև առաջին փորձառութիւնը կը կայանայ գտնելու ու զգա-լու մէջ թէ բացարձակ երազները գրեթէ եր-բեք չեն իրագործուիր և կամ երբ իրագործուին կը մեռնին անմիջապէս՝ աշխարհիկ իրերու հպումէն»։ Եղիա իբր իտէալապաշտ ու հեռամոլ տեսանող հոգի՝ կը սիրէր Կինը իր բացակա-յութեան մէջ, անոր տեսլացած, յիշատակի ձեւին մէջ։ Հեռաւորութիւնն էր որ կ'ստեղ-ծէր գեղեցկութիւնը իրեն համար։

Կը սիրէր Կինը երբ ան իրեն չէր որ կը նայէր. բայց երբ ան իր հմայուած բիբը կը սեւեռէր Եղիային գեղեցկապաշտ հոգիին, Նիրվանայապաշտ մենակեացին գլուխը ակա-մայ շարժումով մը կը հակէր դէպի աջ, դէպի Պարա՛պը՝ Պուտտայի գերագոյն հանգստա-րանը, Նիրվանան՝ ամէն բանի բացարձակ վախճանին, մինչ Կեանքը կը զեռար իր ձախ կողմը։

Եղիա կը հաւատար թէ հաղորդակցու-թեան և իրական հպումին մէջ սէրը խոյս

կուտայ։ Այդ զգայութիւնով է որ կը չարչարուին դժնդակօրէն իր նամակներուն բոլոր տողերը, ուր միշտ փախուստով սիրելու տենչը կը գերակայէ։ Այս խոճալին ուժովը չէ՞ որ Եղիա անձնատուր եղած է նամակագրութիւնով իր մոլեգին սէրը արտայայտելու ձեւին, մինչդեռ իր սիրուհին՝ այդ վարժուհի նրբազգաց աղջիկը, ամէն օր իր քովն էր և կրնար բերանացի թարգմանել անոր ինչ որ իր հոգին կ'զգար։ Եւ մինչեւ անգամ սիրոյ աննիւթական պաշտամունքին իր հայեցողութեանը համար չէ՞ որ անոր շրթունքները չեն կրնար չեշտակի թօթովել ինչ որ հոգիէն կը պոռթկայ և այն պահուն երբ Եղիա վճռականապէս «կը սիրեմ»ը պիտի ըսէ, ընդոստ նահանջ մը կ'ընէ, վախնալով որ չի ռամկանայ առարկայական սիրոյ խոստովանութենէն։

Եղիայի նամակները չօբէնեան տանջուող երաժշտութիւն մըն են ուրկէ հազիւ կը լսուի երջանիկ երգի մը ծուէնը։ Հոն կարօտի, սիրաբաղձ գալարումներու, հիւանդագին հեծկլտուքներու ու նուաղումներու քով, կան բռունցքը սեղմած վրէժխնդրութեան պոռթկումներ, փրփրոտ մարմաջով վրէժ լուծելու համար առարկայապէս սիրելու երազէն զոր ինք կ'ատէ հոգեւին։

Սիրոյ երազանքով ապրած իր գիշերները

կը յիշեցնեն մեզի Միսաքի բանդագուշանքներով, մղձաւանջներով, անուրջներով տանջուող Գիշերները, ուր սիրելի յիշատակներու և երանութեան ապրուած վայրկեաններու խեղդող ցաւով կը գալարուի Եղիային հոգին։ Իր հոգիին հեւքը սակայն կ'անէանայ, կ'աննիւթանայ, կը չոգիանայ, թաղելու համար Եղիան ծոցը այն միւս աշխարհին՝ ցանկալի Նիրվանային զոր ինք սրտովին կ'երազէ, և ուր արդէն մեկնած է այսօր՝ թողլով մեզի սիրելի ու անմոռանալի անուն մը։

Իր այդ կեանքը ուրուանկարող սիրային նամակները, զորս հաճելի դիպուած մը ձեռքս ձգած է, կը յանձնեմ այսօր հրատարակութեան, իբր անմոռանալի յիշատակ մը՝ որ կոչուած է կազմելու մէկ պատուանդանը իր կեանքի պատմութիւնը գեղակերտող և իր հոգիին ներքին ամենաթաքուն ալքերը բիւրեղացնող կոթողին։

ՀՐԱՆՏ ՆԱԶԱՐԵԱՆՑ

**Սիրելի անգաղտնապահութիւնով մը, որուն կը հաւանի նոյն ինքն Եղիայի սիրովը բաղդաւորուած կինը, հոս թոյլ կու-տամ ինքզինքիս արտատպել այն նամակը, զոր Օրիորդ Սրբուհի կ'ուղղէ ինծ, պատասխանելով նամակներուն հրատարակութեան թոյլտուութիւնը խնդրող երկտողիս։**

*Թիֆլիզ, 20 Յունիս, 1910*

*. . . Հրանտ Նազարեանց,*

*Տէր,*

*Ստացայ Յունիս 13 Թուակիր ձեր շնորհաբեր նամակը որով արտօնութիւն կը խնդրէք ինէ հրատարակութեան տալ կարգ մը նամակներ որք անցեալ օրերու տխրազդեցիկ յիշատակներն յիս կը զարթուցանեն։*

*Ազատ էք գործածել զանոնս ըստ հաճոյս, բաւական է որ կազմէք անոնցմով պսակ մը եւ տարաբախտ Եղիայի ճակտին որով զիս ալ շնորհապարտ կացուցած կ'ըլլաք։*

*Սրտագին զգածուած ձեր փափկանկատութենէն, կը խնդրեմ որ հաճիք ընդունիլ խորին յարգանքներս։*

*ՍՐԲՈՒՀԻ . . . . .*

# 1886

## I

*ԻԶՄԻՐ, 14 Նոյեմբեր*

*Քաղցր բարեկամուհիս,*

*Առժամանակեայ Թաղական Խորհրդոյ նոր տնօրէնութեան համեմատ այսուհետեւ շաբաթն անգամ մը պիտի գամ իմ սիրելի Թաղիս սիրելագոյն վարժարանն՝ ընդհանուր պատմութիւն միայն դասախօսելու համար։ Տեղեակ էք անշուշտ այն տնօրէնութեան. կ'երեւակայեմ աշակերտուհեացս տրտմութիւնն, երբ իմացան թէ կիսով պիտի թողո՛ւմ զիրենք։ Իսկ ես որքան տրտմեցայ, ես որ սակայն պարտէի գոհ ըլլալ՝ իմ զբաղմանցս յաճախութեան պատճառաւ՝ Թաղական Խորհրդոյ այն որոշումէն։*

*Գրական աշխատութիւնքս օր աւուր կ'աւելնան. կրկին ուսոցս համար ունէի կրկին Հանդէս. յաւելուածոյ ուս մը չ'ունիմ, և չը գիտեմ թէ ո՛ւր և ինչպէս պիտի կրեմ Արեւելեան Տնտեսական Միութեան ամսաթերթն՝ զոր Տնօրէնութիւնն ալ թախանձանօք յանձ-*

նուեցաւ ինձ։ Չէի ծնած ես՝ ուսոցս վրայ թուղթ կրելու, գրիչ շարժելու, մելան լզելու համար. ծնած էի՝ եթերին երգաձայն բնակչաց նման՝ թեւոցս վրայ տանելու արփւոյն շողն և ըմպելու երկնի՛ց շաղն, և շարժելու համար գարնանային թերթից ու դիմաց փափուկ ալուամազն։ Ես թռչուն ծնած էի և բուի նման խաներու մթին խուցերուն մէջ կ՚անցընեմ իմ թանկագին կեանքս։ Այն օրն—կամ մանաւանդ այն զոյգ մը ժամերն—ուր կուգամ Հասգիւղ, վերկենդանութեան օր մ՚է ինձ համար։ Հոն, այն բանաստեղծական միջավայրին մէջ, կը շնչեմ յաւէտ համասպրամեան օդ և կ՚ըմպեմ նեկտար զովարար անմահարար. կը խօսիք դուք, դաս կ՚ըսեն անոնք. ոմն կը գծէ, ոմն կը գրէ, այլ ոմն կը մրմնջէ, եւ ամենուդ մատանց տակ և ամենուդ շրթանց վրայ կը շրջի ե՛րգն որ հոգւոյս մէջ մե՛ղր կը շինէ։ Եւ կ՚ուզեն՝ անգո՛ւթք՝ կ՚ուզեն որ աւելի ցանցառ այն մեղեդին արձագանգ տայ հոգւոյս մէջ։ Կը կապտեն յինէ միակ մխիթարութիւնն որ ունիմ այս կալանաւոր կենացս մէջ. կը կապտեն մասամբ, այլ կապտում մ՚էր դարձեալ, մեծ զրկանք մը ինձ համար։

Սակայն Նոր Թաղական Խորհուրդն յանգէտս ինձ բարիք մը չ՚ընե՞ր միթէ, պատրաստելով զիս այժմէն մշտնջենական բաժանման որ պիտի հասնի վաղ կամ անագան։ Որ

մը պիտի գայ, ուր չը պիտի կրնամ ընել՝ այլ միայն երազել այն դասարանն, յորում թեւոցս դաշն բախումն ու մատաղ սրտից դաշնագոյն բաբախումն իրար մօտիկ կ'ընէին. օր մը պիտի գայ, ուր անկարող պիտի ըլլամ բայց միայն յիշե՛լ այն զուգեակ աթոռակն՝ աշակերտուհ-եաց զուգեակ կարգի մէջտեղ, եւ վարժապետ և աշակերտուհիք, եւ դաստիարակուհի եւ դաստիարակ հրդեհի մը մէջ՝ ուր բոցք անսպառ և անմահ նիւթերէ կը սնանին ...:

Օր մը, այո՛, յիշատակն եւեթ պիտի մնայ այդ ամենուն: Եւ ի՞նչ է կեանքն արդէն. ո՞չ ապաքէն յաջորդութիւն յիշատակաց, որպէս կայ տիւ և գիշեր, կան մթին ու զուարթագին յիշատակներ. եթէ ամեն հարստութենէ ալ կապտուինք, ոչ ոք զդոսա կարէ խլել ի մէնջ յաւիտեա՛ն: Յաւիտեա՛ն ... արդեօք իրա՞ւ յաւիտենականութեան մէ՞ջ ալ պիտի հետեւին մեզ յիշատակք: Հասգիւղի օրերն յաւիտենականութեան մէ՞ջ ալ պիտի վայելենք յիշատակա՛ւ: Ա՛հ, եթէ հոն ալ յիշատակօք, հառաչանօք, հեծեծանօք՝ պիտի ապրինք, լաւագոյն է կատարեալ մահն, անառաւօտ գիշերն. եւ զա՛յն արդէն ես ի բոլոր սրտէ կը ցանկամ — Նիրվանա՛ն:

II

ԻՃԱՏԻԷ, 20 Նոյեմբեր

*Հոգեկցորդ բարեկամուհիդ իմ,*

*Այսօր վար իջայ եւ չը կրցայ գրել սիրելի սանուհեացս պատմութեան շարն : Ահա գիշեր է. ժամն երկուքն է, և առանձի՛ն եմ խցիկիս մէջ : Վայրենւոյ մը բերնին վայելուչ խօսք մ'է. սակայն պէտի ըսեմ թէ ոչինչ աւելի կը սիրեմ քան առանձնութիւնն, որ ինձ կը պարգեւէ իմ յիշատակներս, երէկի ու աւելի հին ժամանակի յիշատակներս, մանկութեան ու պատանութեան յիշատակներս: Ոսկի՜ չղթայ մ'է այն, որ որորանէն գրեթէ կը սկսի եւ գերեզմանին կը յանգի : Եւ այդ չղթային՝ որը մէն մի օղակին վրայ թռչուն մը կը թառի՝ այդ դիւթական չղթայն առանձնութեա՛ն մէջ իմ աչացս կը փայլի : Եւ մա՞րթ էր որ չը սիրէի առանձնութիւնն : Եւ մա՞րթ էր որ գրիչ ձեռքս չառնէի այժմ ուրիշ բան գրելու համար՝ բայց եթէ նամակ առ Քեզ :*

*Միտքես չէ՛ր անցներ որ մանկութեան*

անցած վայրերուն մէջ երիտասարդութեանս մէկ գեղեցիկ մասն ալ պիտի՛ անցընէի. եթէ այն սանդուխներէն՝ ուր իբրեւ ուսանող կ'ելնէի թեթեւաքայլ իբրեւ թիթեռնիկ՝ իբրեւ ուսուցիչ օր մը պիտի՛ ելնէի ծանրաքայլ, թէեւ հին բարեկամուհի մ'ինձ պաշտօնակից պիտի՛ ունենայի բարոյական որորանիս մէջ, թէ իրեն հաւասար սիրելի պիտի՛ ըլլայի մատաղ էակաց, որք պիտի դառնային տանջալի կենացս մխիթարութիւնն, տաղտկալի կենացս բանաստեղծութիւնն:

Այսօր տեսնելով պայծառ երկինքն ու պարզ օդն, ինձ ծանր եկաւ գործի իջնել, փափաք ունեցայ Հասգիւղ գալ, Բեզ ու սանուհիներս առնել ու շրջագայութեան ելնել, երթալ Քեաղաթխանէ՝ ուր դալար ափունք կարապնաթոյր կամուրջներով կը միանան, երթալ Չիլիհատար՝ Էյիւպ-Սուլթանին այն շարունակութիւնն — և ուր շարունակութիւնն է թերեւս յաւիտենականութիւնն...:

Գիտէ՞ք որ այս խօսքս նշանակութիւն ունի մասնաւոր. մօրս, հօրս, եղբօրս հետ այն տղմուտ առուակին մէջ օր մը պիտի խեղդուէի (*), այո՛, և դեռ պատանեակ էի:

---

(*) Չիլիհատարէն անդին Զօպան-Չէշմէսի կ'երթայինք. «Այս ջուրին մէջ ծառի քէօքեր կան, պազի աճէմի խայըխճի չիտէ, խայըխը կը նստեցունէ» խօսքը նաւավարին բերանն էր և ահա անցա՛ւ նաւակն. Ելաւ տեղէն. Ի զո՛ւր

*ժամեր կան, ուր կը ցաւիմ թէ փրկուեցայ այն վտանգէն, թէ մահուանէ զերծայ՝ մահահոնդոյն կեանք մը վարելու համար...։ Այսպէս ապրեցայ, որպէսզի՛ թանամ արտասուօք հօրս և եղբօրս գերեզմանները, որպէսզի ափով հող նետեմ այնքան սիրելեաց վրայ, որպէսզի չի տեսնեմ Օտեանն աքսորեալ և Վարժապետեանն աճիւնացեալ, որպէսզի չի տեսնեմ մահն ալ իմ հաւատքիս և իմ յուսոյս...։*

*Եւ սակայն դամբարանաց մէջ սահօղ այս կեանքն անհաւատի և յուսահատի՝ դեռ հրապոյր ունի։ Ահա հարուստ յիշատակք որք գլխս կը շրջապատեն. ահա գեղածիծաղ ճակատք՝ որք մռայլ հոգւոյս մէջ վաղ պիտի ցոլանան, երբ սրտատրոփ վեր ելնեմ եկեղեցւոյ փողոցի Կրթարան այն սանդուխներէն՝ որոնք Արքայութիւն կը տանին...։*

*Աստուած իմ, Աստուա՛ծ զոր կ'ուրանամ այլ զոր կ'զգամ, մինչեւ ե՞րբ այն սիրոյ հեղհեղն հոսեցնես պիտի սրտիս մէջ։ Սահմանացդ մէջ սէր մնա՞ց. ամպոցդ մէջ հուր մնա՞ց։ Երեսէդ ո՞ւր փախչիմ, ո՛ Տէր։ Մարդկային ազգի կենաց չափ կ'ընդարձակե՞ս էութիւնս՝*

---

կը ջանար ազատել զայն. ջուրն նաւակին մէջ կը լեցուէր... Երկու ազնուական որսորդք բլրոյն ծայրէն բըրդան և իրենց նաւակաւն եկան մեզ օգնութեան։ Ա՜հ, մի՛ երթաք Զօպան-Զէշմէսի։

*որպէսզի սերունդք անհամար յի՛ս ապրին, յիս վառին, յիս սիրեն և յիս հեծեծեն։ Կ՚ընդլայնեմ սիրտս աւելի քան զովկէանս, որպէսզի նոր աւազան բանամ անսպառ սիրոյն՝ որ թերևս Քեզ ծնունդ տուաւ քան Դուդ այնմիկ։ Սակայն սէրն որ մեր տառապանքն է ինչպէ՞ս երանութիւնդ կը կազմէ։ Քու աչքերէդ շաղ ու շող կը կաթէ, ինչո՞ւ մերիններէն աղի արտասուք։ Քու հանդերձդ արշալոյսն է. Է՞ր անկարող ենք մենք թողուլ սեւ հագուստն։ Այլ... զիս ապրեցո՛ւ, Տէ՛ր, չը կամիմ մեռանիլ. կամի՛մ, կամի՛մ տառապիլ...։*

*Ո՞չ և Քեզ ցանկալի է տառապանքն, ո՛ բարեկամուհիդ իմ քաղցր։*

## III

*ԻՃԱՏԻԷ, 26 Նոյեմբեր*

*Սիրո՛ւհի,*

*Երբ այնպիսի անուն մը Դու կը կրես, է՞ր ես այլ անուն, է՞ր ես այլ մակդիր կը գործածեմ՝ քեզ հետ խօսելով կամ քեզ գրելով։ Բայց զքեզ կոչելէ յետոյ՝ ի՞նչ պիտի ըսեմ քեզ, ի՞նչ պիտի հարցունեմ առ քեզ․ Ահա՛ . . . ։— Երբ ծրարդ ինձ տուիր վառարանին վրայէն, և ես զայն ուրիշ հնոցի մը վրայ զետեղեցի՝ հնոց անշէջ, դեռ առաւօտ էր․ խնդրեցիր յինէ զի կարդամ գիրդ առանձին։ Եւ մինչեւ առանձնութեան սո՛ւրբ ժամն, մինչեւ այն ժամն՝ ուր վաստակաբեկ ու յաւէտ սրտաբե՛կ կը մնամ ստուերամած խցիկս, մինչեւ երեկոյեան ժամն՝ ամբողջ օր մը, ամբողջ դար մը կար։ Նաւամատոյցն երթալով, մաղթեցի որ նախայարկն ոչ ոք գտնուէր շոգենաւուն մէջ․ մաղթանքս ընդունելի եղաւ․ ոչ ոք էր անդ։ Ծոցէս անհամբեր հանեցի ծրարն. և երկու թուղթերն՝ որք*

եղան պահարանին մէջէն՝ զոյգ մը թեւեր ինծ թուեցան. և նախայարկին այն բոլորաձեւ լուսանցքներէն՝ յորոց կը թափանցէր լոյսն ինծ յաւէտ սիրելի՝ ներս մտաւ հուր հոգին որ Սրբուհի կը կոչուի. թեւերն իրեն յարեցան, և աչքերս այն հրային տեսլեան յառեցան։

Քանի՜ն ըղձալի էր սրտիս, քո՛յր իմ, որ միշտ տեւէ ըլլար այդ տեսլական կեանքն. իրական կեանքն անտանելի է հոգւոյս. սակայն տեսլական կեանքն ալ տեւական՝ անիրանալի է յաւիտեան։ Պէտք է ցրուին վարդախայլ ամպերն, պէտք է փարատին քաղցր անուրջք, պէտք է զարթնու մարդն, և խառնաղանճին մէջ գտնէ զինքն։ Ո՜հ, որքա՜ն կը փոքրանայ, կը նուաստանայ մարդն՝ իրական օրըստօրէական կենաց մէջ. մեր ոտից տակ տիղմ կամ փոշի, մեր շուրջ սեղանաւորի սեղաններ՝ ոյց վրայէն Մամոնայ դիքն ոսկեծիծաղ կը հեգնէ մեր ազատութիւնն. անարժան էակաց առջեւ կը խոնարհինք, հալածեալ կամ անտեսեալ արժանաւորին գողունի ողջոյն մը հազիւ կրնանք տալ, հազիւ կը համարձակինք արտասանել մեր նախահարց անունն՝ երբ արդարութեան և վեհութեան համանիշ է այն։

Ինչպէս կը տենչամ Նիրվանային։ Գամիյլ Տէմուլէն կը գրէր բանտին մէջէն առ իւր Լիւսին. «On est libre quand on dort; on n'a

pas le sentiment de sa captivité.» *Բայց այն եղկելի երիտասարդ ամուսինն իր Լիւսին անշուշտ կը տեսնէր երազին մէջ։ Թերեւս երազք Նիրվանայի ծոցուն մէջ ալ կը սպասեն անոնց՝ որք սիրեցին—մեզ նման...։ Է՞ր այնքան կ'ատես ինչ որ այնքան ես կը սիրեմ—Նիրվանա՛ն։ Ո՛վ կ'ըսէ թէ լուսինն՝ ում այս վայրկենիս անշուշտ յուզմամբ հայիս՝ յիշելով հոգեհատոր եղբայրդ՝ ո՞վ կ'ըսէ թէ լուսինն Նիրվանային ծոցն աւելի անոյշ չը պիտի ժպտի մեզ, աւելի քաղցր չը պիտի շողայ մեր ճակատաց վրայ. ո՞վ կ'ըսէ թէ գեղգեղաձայն սոխակք Նիրվանայի ստուերաց մէջ ալ չը պիտի որորեն մեր քունն և կամ չը պիտի զուարճացնեն մեր արթնութիւնն. ո՞վ կ'ըսէ թէ մեր պատուանդանն հոն ադամանդէ չը պիտ' ըլլայ. ո՞վ կ'ըսէ թէ գահերու վրայ չը պիտի գտնենք հոն հովուական կենաց երանութիւնն։*

*Ահա կեանքէս օր մ'ալ անցաւ, ահա ժամ մ'ալ անցաւ իմ գիշերէս։ Եւ ես գոհ եմ, քանզի անջրպետն՝ որ զիս կը բաժնէ Նիրվանայէս՝ աւելի կարճացաւ։*

*Մեծ վշտի մը վրայ կը խօսիս, այնքա՛ն փափուկ կերպիւ (և սովորական է քեզ այդ փափկութիւնն), ինձ կը խօսիս մեծ վշտի մը վրայ՝ ուր կը տեսնես հետքերն իմ «տխրագե՜ղ ճակտիս» վրայ։ Ա՜հ, վիշտեր արդարեւ*

*ունեցած եմ. այլ չեմ կրնար ըսել թէ ո՞րն է ամենէն մեծն. ա՛յն որ ամենէն փոքրն է թերեւս յաչս մարդկան։ Եւ ես կը խորհիմ աւելի իմ ունենալիք վիշտերուս վրայ։*

*Անցեալ օր Բիւզանդ Քէչեան կը զարմանար թէ մտաւոր ոյժս՝ նուազելու տեղ՝ կ'աւելնայ. հապա սրտիս հո՞ւրն, այն չ'աւելնա՞ր միթէ։ Եւ մեծ վշտերուն աղբիւրն անտարակոյս հո՛ն է, սրտին մէջ։*

*Ի՞նչ եղաւ այն վառարանն, ուր շուրջ բոլորած այս առաւօտ կը խօսակցէինք առանձին. աճիւն եւեթ մնաց հոն, իսկ բոց յաւիտեան՝ մեր սրտից վառարանին մէջ։ Ո՞վ գիտէ ի՛նչ սահմանեալ է մեզ։ Բայց թէ ի՛նչ պատահի, թէ բաղդն ո՛ւր ալ զմեզ նետէ.....։ Ո՛հ, չեմ ուզեր վերջացնել։ Գիշեր բարի՛։*

## IV

*ԻՃԱՏԻԷ, 22 Դեկտեմբեր*

*Քոյր իմ,*

*Այս երկու բառերն՝ երկու սեւ արեւներու նման՝ թանձրագոյն խաւարի մէջ թաղա՛ծ են սիրտդ։ Չէի կամիր տեսնել այդ արեգականց արշալոյսն, այլ միայն իբրեւ նկարիչ։ Սակայն յուսա՛մ թէ դու պիտի տեսնես իրենց վերջալոյսն երբ աւարտես նամակս։*

*Առաջին նամակիդ մէջ բառ մը գործածած էիր—մայրաքար։ Չէի կրնար ընդունիլ զայն, որովհետեւ երկուքս ալ կենաց նոյն եղանակին մէջ կը գտնուինք։ Չը գիտեմ ճիշտ ի՛նչ կը կոչուի այդ եղանակն. այլ լա՛ւ էր ինձ գերեզման մտնել քան այդ եղանակին մէջ....։ Երբ երկինք վերցնեմ աչքերս և հոն ինձ երեւին սեւ երկայն ամպեր, ինձ կը թուի թէ ճակտիս խորշոմներուն պատկերն են. և կը փորձուիմ դանակն առնել ու խորշոմներս գծել... Այսպէ՛ս կ'ուզէի դար-*

մանել ամաց աւերն: Այլ մերթ կը մխիթարուիմ և կը կազդուրուիմ, խորհելով թէ հեռուստ այդ սեւ գիծերն՝ նայօղին վրայ թեւատարած թռչնոց տպաւորութիւնն յառաջ կը բերեն...: Միամի՞տ եմ այսպէս խորհելով: Ահ, իցի՜ւ թէ միամտութիւն աւելի պարգեւած ըլլայի՜ն ինձ երկինք, մահկանացուին գերագոյն օժիտն է այն: Հանիս քոյր մ'ունէր, որ կը հաւատար կամ կը կարծէր թէ յօնքերն — իր յօնքերն — հրեշտակաց փետուրէն քաղուած էին. և երջանի՜կ էր: Ես ալ կը հաւատայի թէ հանիիս այն քոյրն հրեշտակներէ սիրեալ և նպաստաւորեալ էր. և ես ալ երջանիկ էի յայնժամ: Աւա՜ղ, դժբաղդութիւնն ինձ համար սկսաւ ա՛յն օրն, ուր գիտցայ թէ բնականօրէն բուսած էին հանիիս քրոջ յօնքերն, այն օրն որ գիտցայ թէ յերկնից իջնօղ թռչուններն ալ՝ մարդոց ու համայն անասնոց նման՝ հողմածին էին և թէ՝ առանց օդոյն երգ չը պիտի ունենային...:

Արդ, մարդ էակին սկզբան ու վախճանին, մարդոյն բնութեան ու բարեչրջութեան վրայ այնքա՛ն բան գիտնալէ յետոյ, ինչպէ՜ս չը պաշտեմ այն յորջորջումն, ինչպէ՞ս չը յեղյեղեմ այն զոյգ մ'անզուգական բառերն «Բո՛յր իմ»: Բարեբաստիկ ամօլ մը չը տեսայ. տեսայ երիտասարդներ ու երիտասարդուհի-

ներ, որք հառաչեցին ու հալեցան իրարու համար և որց սէրն արդէն սպառած էր՝ երբ նոյն պսակին տակ միացան իրենց գլուխները։ Այդ ճակատաց հպումն աղետաբեր է սիրոյն։ Այդ հպման մէջ խոյս կուտայ սէրն, որ յաւիտեան կ'արծարծուի շրթանց և այտից կցումէն։ Ա՛յս է հաւատքս ամուսնութեան վրայ. կին բառն ինձ ատելի է, որպէս թիւն ատելի էր Լամարթինի։ Իսկ ինձ համար հոմանիշ են քոյր և սիրուհի, սեր ու Սրբուհի։

Վախնամ թէ վէճն նորէն բացուի քու ու մտերմուհւոյդ միջև։ «Սիրոյ վրայ խօսիլն» ըսուած է «սիրել է»։ Սիրոյ վրայ վիճիլն ալ՝ կ'ըսեմ ես՝ սիրել է։ Վիճեցէ՛ք ուրեմն, քանի որ ես պիտ' օգտիմ այդ վիճաբանութենէն... Մինաս Չերազ բարեկամս՝ որ անհանգստութիւնս իմացած էր՝ երէկ այցելութեան եկաւ ինձ. մենք ալ վայրկեա՛ն մը սիրոյ վրայ խօսեցանք. «միշտ կը սիրե՞ս» ինձ հարցուց մտերմիս։ Ժպտեցայ։ Չը գիտեմ ի՛նչ նշանակութիւն տուաւ այդ ժպտին։ Ես ալ իրեն չը հարցուցի նոյն բանն. նախ հարցում մը՝ զայն ուղղօղին վերադարձնել բնութեանս կամ սովորութեանս հակառակ ըլլալով, ապա, բոլորովին այդպիսի հարցում մ'աւելորդ դատելով alter ego իս համար։ Սակայն, եթէ զսիրոյ կը խօսինք, առարկայի խօսք չըլլար մեր ընդ մէջ. սիրտս՝ մտերմիս համար գաղտ-

նիք ունի, որպէս իր սիրտն՝ ինծ համար։ Տրտմութեամբ մերթ ինքնին կը հարցնեմ սրա պատճառն. և չը գտնելով զայն ես առաւե՛լ կը տրտմիմ...։ Եւ սրտիս գոյութեան վրայ կը տարակուսի՞մ...։ Մտերմուհիդ՝ այս խօսքին պիտի բերկրի. իր անուանն արժանի պիտի հանդիսանայ կամ պիտի կարծէ...։ Ա՛հ, վիճեցէք, վիճեցէք սիրոյ վրայ. մի՛ ըսէք թէ մարդիկ սէր չունին, կամ սիրտ չունին, քանզի մարդիկ ալ՝ որք արտաքուստ միայն կը տարբերին կիներէն՝ հակառակ սեռին պիտի վերադարձնէին տկարսեօք այդ թշնամանքն...։ Սիրողներուն վրայ մի՛ վիճիք, սիրոյ վրայ վիճեցէք։ Եւ մի՛ վիճիք սիրոյ գոյութեան վրայ, որ Աստուծոյ գոյութենէն աւելի ապացուցեալ է. վիճեցէք սիրոյ բնութեան վրայ. հարցուցէք «աստուածայի՞ն է, դժոխայի՞ն է»։ Ատի մարդ չը գիտցաւ, և սակայն ամէն մարդ ատի կը հարցնէ։ Թուղթս հատաւ. անսպառ է սէրս ու սէրդ՝ Եղիա։

# 1887

## V

ԻՃԱՏԻԷ, 10 Յունվար.

Այս իրիկուն շոգենաւին մէջ Գալուստը տեսայ. հարցուցի «Հիւրերնիդ մեկնեցա՞ւ»։ — «Մեկնեցաւ, ու Սաթենիկն ալ հետը տարաւ։» Գոհ եղաւ սոյն հաստատական պատասխանէն։ Հինգշաբթի, ձիւնը տեսնելով, յիշեցի զքեզ. «Այս օդով ինչպէ՞ս պիտի գայ մինչեւ Հասգիւղ» հարցուցի ինքնիրեն. եւ ես ինձ պատասխանեցի իսկոյն. «Ձեան վրայէն թռչնոյ մը նման պիտի թռչի, և իւր սիրելի և իմ սիրելի սանուհեաց համբոյրներովը պիտ' ջեռնու»։ Նոյնպէս գոհ եղայ որ հօրաքեռաղջիկս ալ ընկերացեր է քեզ. պէտք է նա՛ ալ կենաց կռուին վարժուի. պէտք է նա՛ ալ քաջութիւն սորվի կամ մանաւանդ ի հանդէս ածէ իր քաջութիւնն։ Ես գրեթէ ատելութիւն ունիմ այն աղջկանց կամ կանանց դէմ ոյց կեանքն իր հեշտ ու զուարթ երեւութովն եւեթ ծանօթ է։ Երկու սեռէ տանջուողներուն, մարտնչողներուն համար սէրս անտարակոյս նուազ պիտ'

*ըլլար, եթէ կենաց պայքարին մարտիկներէն մին ալ ես չը լինէի: Այսօր* Երկրագունտի (*) *գրասենեակը փատցա՛յ. վառարանին մէջ ոչ միայն կրակ չը կար, այլ և մոխիր ալ չը կար. Յուլիս ամսուան մէջ ո՛ւր կը կենար, հոն կը կենայ միշտ մեր* սան մանկալն— *որ ինքն ալ կարծես կը մսի: Քանի մը հիւրեր եկան. շուտ փախան. ես դիմացայ, դիմացայ, մինչև որ յանկարծ՝ սառելու երկիւղէն համակուած՝ դուրս նետուեցայ սենեակէն ընդարմացած ձեռօքս հազիւ կարողանալով փակել երկաթէ դուռն: Ես կը փափաքէի որ հարկադրուած ըլլայի գիշերն ալ նոյն սենեակին մէջ ննջել, առանց անկողնի, առանց վերմակի, առանց կրակի, առանց կանդեղի, և յուսահատ՝ մարդասիրական այցելութենէ: Ո՛հ կը պաշտեմ թշուառները. և եթէ փափաք մ'ունիմ որ հաւասարի յետին թշուառութեան ենթարկուելու տենչիս, բոլոր աշխարհի թշուառաց օգնել կարենալու փափա՛քս է: Միայն այս անկեղծ տրամադրութեամբք օժտեալ ըլլալուս համար կ'ընդունիմ այն փառաւոր մակդիրները զորս Նամակացդ միոյն մէջ ինձ շռայլած էիր: Ուրիշ նկատմամբ արհամարհելի, ատելի, խորշելի էակ մըն եմ....:*

---

(*) *Ա՛հ, պիտի կործանի* Երկրագունտն. *այնչա՛փ կը զղջամ որ անցեալ տարի չընդունեցայ Ասիական Ընկերութեան Տնօրէն Ժողովոյ Ատենապետութիւնն, երբ այնքան թախանձանօք ինձ առաջարկուեցաւ ընդհ. ժողովոյն մէջ:*

Այո՛ ։ Երբ հոյակապ շէնք մը տեսնէ մարդ ի՛նչ կը զգայ.— Հիացում։ Այդ ես ալ կը զգամ. այլ ինձ կը թուի թէ հիացումս պիտ՛ աճի, երբ կապուտակ ծուխ մը տեսնեմ նոյն շէնքին վրայ, երբ տեսնեմ բոցերն՝ որք կատաղի ոգիներու նման յարձակին ճարտարապետական հրաշակերտին վրայ և իրարմէ յափշտակեն իր հիւթեղ հրաշագեղ անդամներն, ոյց ամբողջութիւնն նազելի կնոջ մ՚իրանին արտափայլումն էր զոգցես ։ Նորածին նօնօշիկ մանկան մ՚ի տես ինչ զգացում կը ծնի սրտիս մէջ.—ցնծութիւն, գորով, անձնուիրութիւն։ Իսկ ես ցմա՜հ կը տրտմիմ խանձարուրի մ՚առջեւ, կ՚անիծեմ լոյսն, որ զայն աչացս կը յայտնէ. կ՚անիծեմ աստղերն, որովք մանկան մայրն ըղձայր համաստեղել իւր արգանդի պղտոյն ուլն կամ ճակատն. ես ալ կ՚ըղձամ որ երկու գայլեր իրարմէ խլեն այն գիրգ մարմինն, որ գրկախառնութեանց հեշտաւէտ հրովն է զանգուած, որ շրթանց շփումէն արտայայտուած կայծն է որ թերեւս օր մը Տանդէ մը պիտի խանդավառէ կամ Պօնաբարդ մը պիտի խոնարհեցուցանէ ։ Ինչ զգացում կ՚ունենայ երիտասարդն, երբ խումբ մը կուսանք շնորհագեղ և ամօթլեած դիմաւորեն զայն՝ դաշտի մը կամ դրախտի մը մէջ.—Սէր այդ կուսանաց միայն համար ։ Ա՛հ, ես, որ շատ ժամանակէ ի վեր ծեր եմ արդէն, մոլեգին

*կրիւք կը բոցավառիմ, կ'ուզեմ ակռաներս իրենց մարմնոյն մէջ անցընել, կ'ուզե՜մ իրենց բերնին մէջ աւազ լեցնել, կ'ուզե՜մ իրենց ծիծերուն ծայրին լուցկիքս վառել և իրենց խիտ գիսակն հրդեհել՝ ամենո՜ւն ալ, այո՜...։*

*Հո՛ւր, հրդեհ։ Իմ մեծագոյն տանջանքս ա՛յդ եղած է — հուրս։ Հուր հոգեկան, հո՜ւր նիւթական, ամենուրեք զայդ գտնել կը տենչամ։ Կը հարցնես ինձ թէ սիրտ ունի՞մ. — Չը գիտեմ. հուր. ահա ինչ որ ունիմ։ Եւ ես կը զարմանամ որ իմ հուրս անկարող է հալեցնել սառերն որք կը մարմարեն հողն այս առաւօտէն ի վեր: Գիշեր կը գրեմ քեզ, պիտի մակաբերես զայն արդէն յաւէտ կամ նուազ կոր գիծերէն զորս նամակիս տողերը կը կազմեն։ Չը համարձակեցայ նամակիս վրայ դնել անունդ, և նամակիս ներքև իմ անունս։*

## VI

ԻՃԱՏԻԷ, 11 Յունվ. Գիշեր

*Սեւ բարեկամուհին,*

*Մաներկրորդի մը մէջ կարդացի՝ ինձ չը գրած երկար նամակդ։ Նամակաթղթոյն սպիտակութեան հաւասար սպիտակ տառերդ՝ այնքա՛ն նուրբ և այնքա՛ն որոշ էին։ Ճերմակ թուղթի վրայ ճերմակ մելանի գործածութեան գաղտնիքն ինձ անծանօթ գոլով, սովորական եղանակով՝ սև մելանով՝ կը գրեմ քեզ, տրտնջալու համար կծու յանդիմանութիւններէդ, վերջին նամակիդ պատասխանն յապաղելուս պատճառաւ։ Սրտիս փափաքն էր հանապազօր գրել քեզ։ Գիտնալով որ սրտիս փափաքներուն խիստ քիչերն յագեցնելու կարող ըլլամ՝ նիւթական ծանր զբաղմանց պատճառաւ, զիս կը յանդիմանես — դատա՛րկ պահարանովդ։ Հանճարեղ ես, այլ անգո՛ւթ ես։ — Քենէ աւելի անգութ իմ բաղդս է միայն, որ զիս կը դատապարտէ փորձ սրբագրել, երբ ես սահմանուած էի գործ արտադրել...։*

*Գիրէս յառա՛ջ կը համնիմ քեզ։*

## VII

ԻՃԱՏԻԷ, 27 Փետրվար

Ժամ երեքն է. մայրիկս գնաց ննջել եւ ես կը սկսիմ երազե՛լ։ Ահա Հասգիւղ եմ. դպրոցի սանդուղներէն վեր կ'ելնեմ. Թիրեաքեան էֆէնտին դէմս կ'ելնէ· ի՛նչ...դժբաղդութիւն։ Բարեբաղդաբար վար կ'իջնէ և ես վեր կ'ելնեմ։ Գանձապետն ինքն է, բայց Գանձն իմ քովս է։ Ամիան ինձ ոսկի մը կուտայ, ես մէկ միլիոն ոսկիի երջանկութիւն կ'առնեմ իրմէն։ Իրմէն ինչո՞ւ ըլլայ. Հասգիւղէն, Ս. Ներսէսեան աղջկանց վարժարանէն։ Եւ ահա հոն եմ, Ս. Ներսէսեան բարձրագոյն դասարանին մէջ. դէմս կայ քառակուսի մեծ սեւ տախտակ մը, գիշերուան պէս սեւ, անդունդին պէս սեւ. բայց եթէ տեղ մը կայ, ուր ամենէն աւելի հեռու կը գտնուիմ անդունդէն, ուր ամենէն հեռու կը գտնուիմ գիշերային մթութենէն, հոն, այն սեւ տախտակին դէմն է։ Հոն կը կանգնիմ, հոն կը բազմիմ, եւ կը յիշեմ Թիրեաքեան էֆէնտին. Նա չուկան է,

ես դրախտն եմ. գոհ է որ ամիսն ոսկիէ մը աւելի չը տար ինծ, գոհ եմ որ մէկ միլիոնի երջանկութենէն նուազ չեմ վայելեր շաբաթն։ Երբ նա կանգուն ի ձեռին կը չափէ եւ կը հաշուէ, ես կը մոռնամ չափ ու թիւ։ Ես կը մոռնամ թէ որրանէն այնքա՜ն մղոն հեռու կը գտնուիմ արդէն, ես կը մոռնամ տարիներու թիւն որք գլխոյս վրայէն անցան, սեւ մազերս և ոսկի անուրջներս խլելով ու տանելով անդարձ . . . . . . . . . . . . . . . . . . . ։

Ահա հասա՜ւ, ահա հասա՜ւ։ Ո՞ւր կը թաքչի արդեօք. կը լռեսէ զուարթութիւնն։ Այն ինչ կը փթթի ժպիտն աչացս մէջ, եւ ահա կուգայ տրտմութիւնն՝ արտասուաց մէջ խեղդել զայն։ Կը լսեմ բերկրութեան ողորմագին աղաղակն. ի զո՜ւր, ոչինչ կարող եմ ընել. ոչինչ կը ճանչեմ Տրտմութենէն հզօր, անդիմադրելի՜։ Կ'ողողէ հոգիս, կը պարուրէ մարմինս. գոգցես սեւամորթ պարիկի մը գրկախառնութիւնն է, հուրիի մը կամ հրեշտակի մը գրկախառնութենէն աւելի հեշտաւէտ արբուցիչ...։ Այլ կը մոլորիմ դարձեալ. Գիշեր բարի՜, Սրբո՛ւհի։ Ա՜հ, Նիրվանայի ծոցն արթննայի՜ . . . . . . . . . . . . . . . . ։

## VIII

*ԻՃԱՏԻԷ*, 23 *Մարտ*

*Ի՜նչ օր էր այն, Սրբո՜ւհի։ Այդ գեղեցիկ սիրայուշիկ աւուրք պիտի կրկնուի՞ն գամելիազարդ կամ մանիշակազարդ։ Եւ օ՛ր մը, միացնելով բայն ու գոյականն,* Ի՛նչ օրեր *պիտի ձայնարկենք, եթէ տակաւին ձայն ունենանք։*

*Բայց եթէ մեր ձայնն ալ նուազի, միթէ բնութիւնն հոն չէ՞ յաւէտ. միթէ հոն չ՚ե՞ն առուակք եւ անտառք, ալեակք եւ տերեւք իրենց թափառիկ, մեղամաղձիկ ձայնով, այո՛, պիտի ձայնեն ու կրկնաձայնեն «Ի՛նչ օրեր . . . ։»*

*Եւ որքա՜ն երջանիկ ենք որ եթէ մէկ քանի՛ն մեր եւս ունինք, դեռ բազում գեղանըահ օրեր ունինք մեր առջեւ, ոյք պիտ՚անցնին, ո՞վ գիտէ ուր,— թէեւ ես կ՚ուզէի որ ի Հասգիւղ անցնէին։ Հասգի՜ւղ, ի լուր այդ անուան սիրտս կը տրոփէ։ Երբ սիրտս կորսնցնեմ, կ՚աղաղակե՛մ Հասգիւղ, եւ տրոփիւնք կուգան հաստատել սրտիս գոյութիւնն։*

*Եւ երբ լսեմ Հասգիւղ անունն, նախ*

ի՞նչ կը յիշեմ, գիտե՞ս։ Թերեւս ըսես «գիտեմ ո՞վ կը յիշես։» Չը գիտես, Սրբուհի, չը գիտես թէ կը յիշեմ մեր ... էշն։ Ի՞նչ յարում է զոր մարդ ունի կենդանեաց։ Հէ՜գ եղբայրս ... եւ ես, այն իշուն շուրջ կը դեգերէինք, մեզ համար տեսարան մ'էին իր շարժուն ականջք զորս կը տնկէր երբ խոտ կերած ժամանակ իրեն մօտենայինք. կից կ'ուտէինք, այլ կը սիրէինք մեր էշն։ Երբ նստած գտնէինք զայն ախոռին մէջ մինաւորիկ, խոհուն այլ ժպտուն յաւէտ, կը հրճուէր. երկիւղիւ կը մօտենայինք կենդանւոյն և կը փայփայէինք իր երեսն։ Եւ ահա Խրիստոն կուգար, հայտէ՜ մեր էշն առջին կը ձգէր ու պօստան տոլապին կը կապէր. կ'աղաչէինք որ չը կապէ աչքերն ալ. քիչ մը կ'անցնէր, կ'աղաչէինք Խրիստոյին որ ալ քակէ հանէ խեղճ կենդանին. «Յոգնեցաւ» կ'ըսէինք։ Եւ մեզ համար անգութ մարդ էր պարտիզպանն, որ կը թողուր ժամերով պօստան տոլապին շուրջ դառնալ մեր սիրելի բարեկամն...։

Ի՞նչ է այս յարումն զոր ունին մարդիկ առ կենդանիս, և ոչ միայն մանկունք, տղայ մարդիկ, այլ չափահաս մարդիկ ալ. Արաբին սէրն իր ձիուն համար, Պայրընի սէ՜րն իր իշուն... ի՞նչ կ'ըսեմ, իր շունին համար։ Մենք շուն ալ ունէինք, աղւորիկ կատու ալ, աղաւնիներ ալ, հաւեր ու վառեակներ ու ձիեր ալ.

բայց նոյն իշուն նայուածքն ինձ խանդաղատանք կ'ազդէր։ Դպրոցէն վերադարձիս՝ անհամբեր ախոռն ուղղակի կը վազէի. չեմ ամաչեր խոստովանելու զայս, մանաւանդ կարդալէ յետոյ Վիգտոր Իւկօյի մէկ սքանչելի հատուածն՝ ուր կը հաստատուի խոնարհ չորքոտանւոյն մարդոց վրայ առաւելութիւնն իբրեւ բարեսրտութիւն, մանաւանդ կարդալէ վերջ Բօլ Հէյզի Աւանակն։ Մ. հ., միայն Վերթեր կարդացած ժամանակ այնքան ջերմ արտասուք թափած եմ որքան երբ ընթերցայ գերման սիրուն վիպասանին այն փոքրիկ-մեծ-գլուխ-գործոցն՝ Աւանակն։ Իմ իշուս վրայ ալ լա՜ցի միանգամայն։

Եւ գիտե՞ս, Սրբո՛ւհի, ո՞ւմ հետ կ'ուզէի երես երեսի հանդիպիլ տապանին մէջ. ո՛չ քեզ հետ՝ որպէս տեսած ես խորհրդաւոր երազիդ մէջ, — այլ իմ իշո՛ւս հետ...։

## IX

*ԻՃԱՏԻԷ, 10 Ապրիլ*

*Սրբուհի,*

*Կը թողում այն աշխատանքն որ ինծ ամենէն անհաճոյ է, եւ կը սկսիմ հոգւոյս հաճոյագոյն աշխատանքն: Գուշակեցիր որ թողի բառարանի սրբագրութիւնն՝ առ քեզ թուղթ գրելոյ համար: Գրելու համար քե՛զ թուղթ բողոքոյ:*

*Մերթ հեռուէն դաշոյն մը տեսնելով արեգակ կը կարծէ մարդ. ասի անբացատրելի չ'է: Բայց անբացատրելի է ինծ համար երբ իմ նամակս դաշոյն քեզ կը թուի. թուի՛ն ալ խօ՛սք է, դաշոյնի գործ կը կատարէ սրտիդ համար: Սրտիդ վէրքերը երէկ խօսքերուդ մէջ կ'արիւնէին (եւ թերեւս ա՛յն արիւնն էր որ կը ցոլար իմ եւ աշակերտուհեացս դիմաց վրայ՝ որք հակապատկեր մը կը կազմէին մարմարեան դիմացդ հետ). եւ ահա նամակիդ մէջ ալ կը գտնեմ թանձր արիւն սրտի:*

*Սովորականէն հակիրճ գրած էիր նամակդ. և գիտե՞ս որ դեռ այնքան լաւ ապացուցած չէիր սէրդ առ իս։ Սակայն, այո՛, անբացատրելի կը մնայ ինձ թէ նամակս ի՛նչպէս կրցած է վիրաւորել զքեզ։ Վիրաւորուա՞ծ ես, քանզի ես զիս թշնամանած էի թղթոյս մէջ, այլ ես, քո՛յր իմ, ես զիս անարժան կը գտնեմ հրեշտակի մը սիրոյ, որ բնագաւառն է անմահութեան։ Ես սիրելի էչ մ'ունէի, մանկութեանս օրերուն անբաժան ընկերն. երբ զիս առ յաւէտ թողուց, լացի՛ որպէս կուլայ սերոբն որ ընդմիշտ կը բաժնուի իր նժոյգէն։ Դիտա՞ծ ես, Սրբուհի, մեծ հոգիներն, խորունկ էութիւններն աւելի կը յարին կենդանեաց քան իրենց նմանեաց (երկու սեռէ ալ)։ Ինչո՞ւ չես ներեր որ հասարակ այլ ոչ ընդհատ խորին էութիւն մը՝ որպէս եմ ես՝ յարիմ ու յարեալ մնամ իշու մը։ Եթէ չիրմին մէջ դեռ գիտակցութիւն պիտի ունենայ մարդ, հոն չէի ուզեր հանգչիլ իմ երկրպագած էակներէս ո՛չ միոյն հետ. ո՛հ, կ'ուզէի գերեզմանին մէջ երես երեսի հանգչիլ Վիշտին հետ, որուն միայն թերեւս պարտիմ քնարս. իսկ եթէ՝ հակառակ աղերսանացս՝ Վիշտն, իմ չրթանցս զլանար իր աստուածօրէն աժգոյն այտերն եւ թեւօցս զլանար իր ճառագայթներէն նուրբ հասակն ի վայելումն յաւէրժ ի գերեզմանին, յայնժամ, այո՛, կ'ուզէի իմ Հազգիւղի իշուս, իմ ման-*

*կութեան անմոռանալի բարեկամիս հետ երես երեսի ննջել ի գերեզմանին ։*

*«Քնարն» ըսի. կա՞րճ եկաւ այդ բառն ։ Երկարագոյն համանիշն յիշեմ,* բանաստեղծութիւն *։ Վշտին, այո՛, պարտիմ բանաստեղծութիւնն, որ իմ կեանքս է, որ զիս սիրելի կը կացուցանէ գերագոյն էակաց, որ եւ քեզ սիրելի կացոյց զիս, ո՛ Սրբուհի, ճառագայթի մը նման նուրբ, լուսատարր, երկնային Սրբուհի ։ Քնա՛ր ... տիղմն եմ ես և ճառագայթով կը սնանիմ, ճառագայթ կը ծծեմ։ Ա՜հ, գթութի՜ւն, ճառագայթալիր թղթակցութենէդ զիս երբէք մի՛ զրկեր, Սրբուհի ։*

X

*ԻՃԱՏԻԷ, 27 Մայիս*

*Սիրուհի՛,*

*Որքան երախտապարտ ըրիր գիս կիրակնօրեայ այցելութեամբդ։ Մեր մտերմութիւնն օր աւուր աւելի կ'ամրապնդի։ Եւ ոչինչ աւելի կ'ամրապնդէ մտերմական կապերն... քան հիւանդութիւնն։ Մարմնոյ տկարութիւնն երեւան կը հանէ սրտին բոլոր զօրութիւնն։*

*Իմանալով տկարութիւնս, աւելի կը յուզուիս քան թէ գիս տեսնէիր քաջառողջ. և սրտին զօրութիւնն ո՞չ ապաքէն յուզման սաստկութենէն կը չափուի։ Կը մտածեմ կամ կը զգամ թէ, առ Քեզ ունեցած սէրէս աւելի թերևս իմ տկարութիւնս է որ գիս համակրելի կը կացուցանէ Քեզ։ Քանզի նոր չէ տկարութիւնս. երբ այս անգամ ի Հասգիւղ նորէն իրար հանդիպեցանք, տկար էի արդէն, կուրծքէս տկար. կը գուրգուրայիր վրաս, եթէ հնար ըլլար՝ մազերովդ ու մարմնովդ պիտի*

ծածկէիր պատուհաններուն ճեղքերն որոնցմէ մեր դասարանին մէջ կը սողոսկէր քամին։

Ո՛չ, դու զիս երեւակայական հիւանդ չ'էիր կարծեր. դու գիտէիր թէ Արծրունի և Թեաթիպեան զիս երկար ատեն դարմանած էին քանզի զիս հիւանդ գտած էին։ Իրաւ է որ իրական հիւանդութենէս զատ ունիմ հիւանդութիւն մ'ալ. սակայն անի երեւակայական չէ, այլ բարոյական։ Դու զիս այդ կրկին հիւանդութեանցս համար կը սիրես։ Եւ սիրոյդ անշուշտ առաւել արժանացայ նոր հիւանդութիւն մ'ալ ստանալով, որ փարատելու վրայ է, այլ որ հետք պիտի թողու՛ վրաս ...։ Խելագարութեան սկզբնաւորութիւն մ'իսկ չէր թերեւս ունեցածս. մտաւոր տարապայման յոգնութեան և բարկութեան առթած հիւանդային վիճակ մ'էր, զոր անփոյթ չեղայ դարմանել տալ. և միայն ինձ կը թուի թէ տրտմութիւնս ապշութեան թեթեւ հանգամանք մ'առաւ։ Այսուհետեւ, մ՛հ, կրօ՛զս կը տեսնեմ երբ հայերէն հանդէս ու գրեան տեսնեմ։ Ու՛ր երթամ, իմ ասպարէզիս մէջ այնպիսի մարդոց կը հանդիպիմ որք զիս շահագործել կ'ուզեն։ Մեծագոյն բարերարս պիտ' ըլլար այն անձն, որ այս տագնապալի կացութեանս մէջ յանգգայս զիս ուրիշ ասպարէզ մը փոխադրէր։ Չեմ կրնար բացատրել որքա՛ն զզուեցայ, որքա՛ն զզուեցայ այս ասպարէզէն։

—

*Երբ ի Գատըքէօյ գերմարդկային ջանքերով զիս ազատեցին մահուան թմբիրէն, պահապան զինուոր մը՝ ազնիւ անձ՝ քաղցր ձայնիւ հարցուց թէ ինչո՞ւ ծով նետուեցայ...։ Պատասխան տուի. «Զի կեանքէն զզուած էի, և յաւէտ զզուած եմ կեանքէն...։» Իմ այս տրամադրութեանս մէջ անփոփոխ՝ ինծ հետ այսպէ՛ս վարուելու են...։*

*Ա՜հ, ի՞նչ կ՚ուզեն ինէ. ինչո՞ւ զիս չեն հասկնար. ինչո՞ւ զիս կը հալածեն. ինչո՞ւ զիս չարաչար կ՚աշխատցնեն և չարաչար կը խաբեն ...։ Պաղտատլեան տպարանն երեք վայրկեան հազիւ կրցի կամ ուզեցի մնալ այսօր. հազիւ երեք ժամ ալ կրցայ կենալ* Երկրագունտի *գրասենեակն, ու չուտ տուն վերադարձայ. կատարեցի սակայն պարտքս, գործքս, սրբագրեցի — առանձինն —* Երկրագունտի *փորձերն. սկսաւ գլուխս ծանրանալ։ Դարձիս՝ քացախով բաւական յաղթեցի։ Նոր շիշ մ՚էր քացախի. քիչ մ՚ալ հերացդ խուրձին վրայ կաթեցուցի, զի թուեցաւ ինծ թէ քու ալ գլուխդ կը ցաւի՝ առ համակրանաց։*

*Յ. Գ. — Քու Վ....իդ ըսէ, կ՚աղաչեմ որ մեր երկուքին մէջտեղ չը մտնէ — բայց միայն մտիկ ընելու համար։*

## XI

ԻՃԱՏԻԷ, 8 Յունիս

*Եթէ ոչ նոյն օրն, այլ նոյն ժամն է յորում այցելեցի քեզ հինգշաբթի։ Հասգիւղի տուներն այնպէ՜ս են, պարտէզի դուռ ալ ունին։ Մեր տան ալ փողոցի դուռն հիմա չի բանիր, ու նոյնպէս ձեր դուռն ալ։ Բայց ի՜նչ անհուն տարբերութիւն այն երկու տանց միջև. մեր տունն՝ յիշատակնե՜ր այժմ հոն կը բնակին. իսկ այն տան մէջ, ուր զանգակն եւ կամ ուռնակն անցեալ օր զարկի, կը բնակի կամ կը բունի էա՜կ մը որ ունի յիշատակի մը վսեմութիւնն այլ որ ունի նաեւ ինչ որ յիշատակին կը պակսի — կենդանութիւնն։ Ո՛չ սակաւ ինչ ե՛ւ քեզ կենդանութիւնն այն օր կը պակսէր, Սրբուհի։ կենդանութիւնն, արեան խակութիւնն, այտիցդ վրայ եկած էր՝ գոգցես առյաւէ՜տ խոյս տալու համար ... ո՛հ, ո՛չ, դիմացդ սպիտակութիւնն եւս առաւել ի վեր հանելու համար. կը նմանէիր Ռափայէլի դիւցազնուհւոյն. եւ տեղն ու տունն ալ այնքա՜ն*

*կը նմանէին այն երկնային վիպասանութեան մէջ նկարագրուած հիւանդագեղ հոգեհրաւէր սիրավայրին . . . ։*

*Եւ անցաւ երազն, անոյշ, անասելի, անդառնալի՜ . — քանզի չեմ մաղթեր անշուշտ քեզ վերստին հիւանդանալ (յուսամ ապաքինեցար) երկնաքանչ տեսարան մ'ընծայելու համար բանաստեղծի մը, որ սիրտն այնքա՜ն մանրաբաժին ցրուած է տիեզերաց մէջ մինչ զի լանջացն ետեւ որ սրտին գտնուած տեղն այսօր լցուած կը համարի ցուրտ զգացմամբն ... ։*

*Այլ դու սիրտ պիտի գտնես վերագրեալ պարբերութեան առաջին նախադասութեան մէջ ։ Չը գիտեմ, ա՜հ, չը գիտեմ, ո՜ Սրբուհի, չը գիտեմ ի՛նչ եմ, ի՛նչպէս եմ, ի՛նչ ունիմ, եւ ի՛նչ չունիմ ։ Բայց թէեւ չունենալս քա՛ջ գիտեմ, եւ յաւէտ կը նախանձիմ այն արարածոց, որք փետուր ունին և մեր գլխոյն վրայ սաւառնելով հոլաթև կ'արգահատին թերեւս մեր վրայ, զի փետուրն՝ ազատութեան խորհրդանշան՝ գործիք ենք ըրած մեզ գիտութեա՜ն ։ Անտուն, անհանդերձ, անգործիք, և անգործ յածի՛լ արարչութեան մէջ, ո՜ գեղանսեհ արարած . . . ։*

*Չունի՞ն իրենց անուրջներն անո՛նք ալ ։ Անո՛ւրջ, իրենց բոլոր կեանքն անուրջ է ։ Կը թռչին, կ'երգեն բոլոր իրենց կեանքն, որ հողէն վեր կ'անցնի, թերթերու մէջ, դալարեաց մէջ,*

*օդոց մէջ, ճառագայթից մէջ, փայլակնց մէջ, ջուրց վրայ, հովանեաց տակ, մարդկան ըղձից և երկրի օրհնութեանց ընդմէջ...։*

*Չեմ ուզեր շարունակել, ի՛նչ ալ ըսէ հրեշտակային Վ.....դ։ Չեմ ուզեր այլ ևս խօսիլ ա՛յն երանութեան վրայ զոր չունիմ։ Եւ քանզի ապերջանի՛կ եմ, օր մը պիտի խօսիմ քեզ այն դժբաղդութեանց վրայ որք կ՚ուզէի թէ յաւելնային իմ միւս դժբաղդութեանց վրայ ...։*

*Հի՛նգշաբթի՛։*

## XII

ԻՃԱՏԻԷ, 24 Յունիս

*Սրբուհի,*

*Շաբաթ Պէօյիւքտէրէ կ'երթայի․ շոգենաւին մէջ քացախ կար գրպանս, այն քաղցր ճաբոնական քացախն՝ որ անդրագոյն արևելեան բուրմանց հետ անդրագոյն արեւելեան երազներ ալ կը բերէ։ Պահ մը գրպանէս հանեցի սրուակիկս, հոտոտեցի, և վերստին գրպանս դրի։ Լաւ չէի գոցած սրուակին բերան, եւ սրտիս վրայ բան մը կը զգայի․ կ'այրէր կուրծքս հեշտօրէն։ Ի՞նչ ազդեցութեամբ էր՝ կը հարցնէի ես ինձ։ Եւ կուրծքս կ'այրէր, կ'այրէր հեշտօրէն, գոգցես փափկագոյն կուրծքի մը ճնշմամբ։ Մոռցած էի սրուակն, եւ յիշեցի նամակն․ յիշեցի նամակդ, զոր կուրծքիս վրայ Պէօյիւքտէրէ կը տանէի՝ Պէօյիւքտէրէի լուսնին լուսով անգամ մը զայն կարդալու համար։ Ձեռքս ծոցս դրի․ ձեռքս ալ սկսաւ այրիլ․ մատանցս տակ եկաւ սրուա-*

*կիկն, եւ մոռցայ նամակդ։ Ի՞նչ է մարդս․ յողդողդ կ'անուանենք զայն, կը մեղանչենք։ Տկար էա՜կ մ'է, տպաւորութեանց ենթակայ, տպաւորութեանց խաղալիկ, արտաքին առարկայից ստրուկ։ Իմ բոլոր կամօքս, իմ բոլոր սրտովս ինչո՞ւ պիտի մոռնայի նամակդ․ — վասնզի մարդ էի։*

*Եւ իբրեւ մարդ, օր մը մին կը յիշեմ, օր մը միւսն։ Նորավէպի մը մէջ միոյն համար* միայն *կը հառաչեմ, ուրիշ նորավէպի մը մէջ միւսոյն համար* միայն*։ Եւ դու, այնքան ճանաչօղ մարդկային բնութեան, դու, այնքան խորագէտ կամ խորիմաստ, կը յուզուիս, «երկրորդական դեր»ի խօսք կ'ընես։ Կրնամ զքեզ օր մը մոռնալ, Սրբուհի՛, կրնամ տարի մը չյիշել․ — քանի որ մարդ եմ։ Սակայն, ո՛չ, քեզ նման էակ մը՝ որքան ժամանակ որ իրմով զբաղիմ՝ չը կրնար երկրորդական անձ մը լինիլ ինձ համար։ Պայրընի նման կրնայի զքեզ ինձ սիրելի անաստուծէ մը վար դասել, այլ միշտ աստուծոյ մը կամ աստուածուհւոյ մը հաւասար զքեզ պիտի նկատէի։ Անաստուածն, այո՛, ա՛յն միայն բոլորանուէր մարդոյս կը յարի․ կինն՝ որքան ալ աստուածուհի և իբրեւ աստուածուհի՝ օր մը կուգայ որ զքեզ կ'անտեսէ՜։ Կը յիշեմ Վ․․․դ, կը յիշեմ թէ կանայք մարդոց համար կ'ըսեն նոյն բանն․ և նամակիդ սկիզբն ես իսկ ինքզինքս ամ-*

բաստանեցի, ես իսկ խոստովանեցայ տկարութիւնս։ Այլ թէ երկու սեւերն ինչ ալ ըսեն իրարու համար, պէտք է խոնարհին, պէտք է ծնրադրեն անասնոյն առջեւ...։ Ի՛նչ որ կ'ընէին արդէն նախնի ժողովրդոցմէ ոմանք ի մասնաւորի։

Արտասուք մը ինկած էր նամակիդ ծոցն, արտասուք սիրոյ, արտասուք Եղիային համար, արտասուք հայհոյիչին համար։ Ու Յաւելագրոյդ մէջ ապաշաւ յայտնած էիր, և նորէն անշուշտ պիտի յայտնես՝ նամակիս ընթերցմամբ՝ այն արտասուոյ կաթիլին համար։ Ամէն բան ետ կրնայ առնուիլ, պատկեր մը, հերաց խուրձ մը, յիշատակ մը, խոստում մը, թերեւս համբոյր մ'իսկ. իսկ արտասուքն, ո՛չ, անի ետ չառնուիր։ Ես արտասուքդ ունիմ, և ասպարէզ կը կարդամ քեզ որ կորզես զայն նամակիդ ծոցէն, սրտիս խորէն։ Ի՛նչ, այն կաթիլն արդէն գետ մ'եղաւ որ էութեանս ընդմէջէն կ'ընթանայ։ Ի՞նչ կրնաս ընել այդ գետին դէմ։ Լաւագոյն չէ՞ հիանալ իր ընթացքին, ժպիտ մ'արձակել իր գոգն, որ անկորուստ կը պահէ ամէն ինչ որ ի քէն է, զի և ինքն իսկ է ի քէն։

Օրացոյցիս մէջ ընթերցայ թէ վաղ Թարգմանչաց տօն է։ Եւ երէկ Մէզպուրեան վարժարանն, ու քննութեան էի գացած՝ իմացայ թէ սոյն ազգային մեծ տօնին պատճառաւ

*փակ պիտի մնան բոլոր վարժարանք։ Ուստի ուրբաթ պիտի տեսնուինք։ Կը ներփակեմ լուսանկարս, որ աւելի քահանայի մը կը նմանի քան «Նիրվանայ քուրմ»ին, որպէս կը կոչէ զիս Զերազ։ Դու ալ չպիտի սիրես այդ պատկերն, այլ պիտի սիրես, պիտի սիրե՛ս*

*ՏԷՄԻՐՃԻՊԱՇԵԱՆՆ*

Այս նամակին տակ գրուած է կանացի նուրբ գիրով.

*«Ա՜հ, այո՛, այո՛, այո՛, յաւիտեա՛ն»։*

Ս.

## XIII

ԻՃԱՏԻԷ, 2 Յուլիս

«Ահա թէ ի՛նչ է սիրել ու սիրուիլ...»:

ՍԻՐԲՈՒՀԻ

*Սրբուհի,*

*Երէ՛կ, ինչպէ՛ս մեկնեցայ վարժարանէն, ինչպէ՛ս տուն եկայ: Հեկեկանաց արտասուալիր երաժշտութիւնն ետեւէս եկաւ մինչեւ նաւամատոյց, մինչեւ կամուրջ, մինչեւ տուն, մինչեւ քուն. զի քնոյս մէջ ալ անշուշտ պիտի լսեմ, հանապազօր ու յաւիտեան պիտի լսեմ այն անխօս հրաժեշտի աղեկեզիկ ձայներն՝ արտասուօք թացեալ ու թափանցեալ...:*

*Ա՜հ, շատ անգամներ որոշեցի կափարիչ մը գնել սրտիս, շա՛տ ջանացի մարել «այն հուրն որ զիս կը լափէ»: Արդեօք պիտի յաջողի՞մ այս տարի: Այս տարիքին մէջ, երեսունեւվեցամեայ հասակին մէջ Լորտ Պայրըն կը գրէր իր վերջին նուագին սկիզբն.*

Il est temps d'étouffer l'ardeur qui me dévore…

*Պէ՛տք է ընեմ այդ բանն, և ժամանակն յոյժ նպաստաւոր է։*

*Ահա կը բաժնուիմ սիրելի սանուհիներէս, և կը զգամ—մանաւանդ վերջին երկու դրոցդ ընթերցումէն յետոյ — թէ պիտի բաժնուիմ սիրելի սանուհեացս և ինձ ամենասիրելի Սրբուհիէն..............։*

*Ես երբ գաւաթ մը կոտրեմ ակամայ, կը տխրիմ. և կամաւ Արարիչն սրտեր կը կոտրէ...։ Պահեցի ա՛յն թաշկինակն, որով երէկ դպրոցն արտասուքս սրբեցի. սո՛ւրբ արտասուք սիրոյ...։ «Տարտղնեցա՛ւ այն բոյնը.» կը գրէր Օտեան էֆէնտին. աշակերտուհիք մէկ կողմ, վարժուհին միւս կողմ, վարժապետն ուրիշ կողմ. այսպէ՛ս պիտի ըլլայ...։*

*Կը թողում գրիչս և ձեռքս կ'առնում Ս. Գիրքը, մխիթարութեա՛ն Գիրքը. Սաղմոսը կը բացուի, և կը կարդամ. «Ապաքէն որպէս ի պատկերի շրջի մարդ, սակայն ի զուր խռովի. գանձէ և ոչ գիտէ ում ժողովէ. իսկ արդ՝ ո՞վ է համբերութիւն իմ, եթէ ոչ դու, Տէ՛ր, կամ կար զօրութեան իմոյ՝ թէ ոչ ի քէն։»*

*Ու երբ այն անձնաւոր, մխիթարիչ ու զօրացուցիչ Աստուածը կը պակսի մարդուն, ի՞նչ պէտք է ընէ մանկանացուն, տառապ-*

*եալ ամայացեալ մանկանացուն։ Ամայացեալ Եղիան. այո՛, զի ո՞վ պիտի բնակի յիս յետ այսօրիկ. ո՛չ ոք, յիշատակներ։ Ես ո՞ւր պիտի բնակիմ յետ այսօրիկ — ոչ ուրեք, պատկերի մը մէջ։ Որպէս ի պատկերք պիտի շրջիմ....։*

*Որորի ձա՛յն մը...։ Որորն ինչո՞ւ քանի մը ժամ կը քնացնէ միայն։ Բոլոր տիեզերքին մէջ արդեօք չը կա՞յ կին մը որուն որորն յաւիտեան քնացնէ...։ Քնացի՛ր, մանկիկ, ալ մի՛ արթննար. եթէ սի՛րտ ունիս, մանկի՛կ, ո՛հ, մի՛ մեծնար. քնացիր, մանկի՛կ, քունն անճառ ու անվախճան Նիրվանային...։*

*Եւ որոր ըսելով և որոր լսելով իմ ալ անա քունս եկաւ... քնացի՛ր, Սրբուհի՛, քնացի՛ր ... հայելով անխօս պատկերին...։*

## XIV

*ԻՃԱՏԻԷ, 7 Սեպտ.*

*Սեպտեմբե՛ր,*

*Թերեւս ամենէն գեղանոյշ ամիսն, ո՛ Սրբուհի: Սիրական երաժշտութիւնս ինձ կը բերէ, հովուն յօրինած հոգենուա՛գ երաժըշտութիւնն անտառակին դողդոջուն տերեւոց վրայ: Ինչ հմայիչ զօրութիւն է այն, աշնանային հովուն զօրութիւնն. ամե՛ն օր անթիւ թերթեր կը քշէ կը տանի, կը տանի հրապոյրներն անտառակին, ու մեր հոգւոյ խորերէն ալ աննորոգելի՛ հառաչներ կը խլէ կը տանի: Եւ սակայն . . . աշնան կը սպասենք, կը սպասենք յափշտակիչ անագորոյն հողմոց: Այն սօսափիւնին մէջ սիրտ կա՛յ, սրտի ձայն կայ, սրտից ձայներ կան . . . ու շատ բնական է բացատրութիւնն այդ երեւոյթին. որքա՜ն սրտեր հողին տակ, ուրկէ տերեւն՝ նման մարդոյն՝ կ'առնու իր սնունդն. որքա՜ն սրտի մասնիկներ օդին մէջ, որ ծնողն ու պահողն է հողմին: Եւ սրտեր՝ այսպէս՝ ի տիեզերս*

սփիւռ, կը սկսին մեզ հետ խօսակցիլ, երբ ծաղկունք կ'անհետանան երկրէն և ամպեր կ'երեւնան երկնից մէջ: Սրտերն այն ժամանակ կը խօսին մեզ ի խորոց գերեզմանին:

Մտիկ ըրէ՛, Սրբուհի... Օտեանին զոր կը յիշես ինձ՝ Օտեանին ձայնն է, նորա սրտին որ աւելի զգացումներ ունէր քան անտառ մը չ'ունի տերեւներ. զգացումնե՛ր, այո՛, անհամար են սրտին մէջ, երբ սիրտն՝ Օտեանի մը սրտին տակ դրուած է: Թերեւս բոլոր այդ զգացմունք՝ ոյց չը գիտենք բոլորին ալ անուններն՝ ի մի միակ զգացում կը բովանդակին...: Եւ մենք նոր վարդին ու նոր սոխակին չը պիտի սպասենք՝ մրմնջելու կամ գոչելու համար—Սէ՛ր: Այս մահաբոյր եղանակին մէջ ալ՝ սէ՛րն է որ զմեզ կը համակէ. անկեալ տերեւն և անկնօղ տերեւն՝ նոյն երգն ունին որք իրարու կը համապատասխանեն մեր ոտից տակէն ու մեր գլխոյն վրայէն. նո՛յն երգն հարուստ յոգնական, հոգեխօս, զոր աշխարհի աղմուկին մէջէն ալ միշտ կը լսենք՝ երբ հարկադրուինք մեր քաղցրիկ առանձնարանէն հեռանալ ու քաղաք իջնալ: Սէր և տրտմութիւն: Գարնան ալ մեր բաժինն է այն, աշնան ալ:

Փոխուէ՛, կ'ըսեն ինձ բազումք, մայրս՝ բազմաց բազմաթախանձն. ու պէտք էր լսէի մօր խրատուն, մօր թախանձանաց: Իմ

զուարթութիւնս իր կեանքն ըլլար պիտի։ Ա՜հ, իմ անհուն զգայնութեանս մէջ, ի՜նչ անզգայ էակ եմ սակայն...։ Եւ քեռայրդ ալ քեզ կ'ըսէ շատ մը բաներ. անի կ'ըսէ քեզ «փոխուած ես։» Զգացո՞ւմն է թէ տըրտմութի՞ւնն որ քեզ նոր եկաւ. ոչ մին անշուշտ, ոչ միւսն — որովհետեւ ես երկուքն անջատ չեմ կրնար ըմբռնել իրարմէ։ Միայն թէ տրտմութիւնդ նոր հանգամանք մը ստացաւ, Նիրվանատենչ երիտասարդի մը հետ հաղորդակցութեան մտնելով սիրտդ խորզգած։ Զուա՞րթ է Վ...դ։ Ո՜հ, շա՜տ հեռու ենք. աշխարհ մը՝ վայրենի Իւսկիւտարին ու հմայիչ Հասգիւղին միջեւ։

## XV

Երկուշաբթի Վարդավառ, յիշատակ մեռելոց.

*Այլ ինչո՞ւ տենչամ մահուան, երբ այսպէս կը սիրուիմ և այնպիսի՛ էակէ։ Չը գիտեմ՝ թէ սիրտ մ'երբէք այնքան ամբողջովին գրուա՞ծ էր թուղթի վրայ. չը գիտեմ՝ սէրն երբէք այնքա՛ն սաստկութեամբ արտայայտուա՞ծ էր։ Այն ինչ նամակ էր։ Ա՜հ, պէ՛տք է հնչէ բաժանման ժամն, որպէս զի զգանք թէ որքան կը սիրենք, «Մնաս բարով»։ Այսպէս ինձ ըսիր վերջին դասախօսութեանս օրն, երբ դասարանէն, և ի դասարանին առանձին մնացին դասատուհին ու դասատուն, Սրբուհին և Եղիան, որ բողոքելով* մնաս բարովիդ *դէմ, մրմնջեց. «Կը փափաքիմ տեսնուիլ ուղեւորութենէդ յառաջ. կրկի՛ն տես։» Ու զղջացիր, զի հուսկ ողջոյն տուած էիր Եղիային. լացիր այն գիշերն. ի՞նչ կ'ըսեմ, լացիր այն վայրկեանին իսկ՝ ուր դասարանին մէջ մինակ մնացիր, երեկոյեան ստուերներուն մէջ, առանց այն Եղիային զոր սիրեցիր և զոր աշակերտուհիքդ կ'արտասուէին անդէն։ Գնա-*

ցիր, արտասուքդ իրենց արտասուաց խառնեցիր, և ձեր արտասուօք նուիրագործեցիք այն տունն որքան չեն նուիրագործած զայն օրհնութիւնք քահանայից և քրտունք սանուհեաց ու խնամակալուհեաց։ Ես իսկ երջանիկ եմ որ առթեցի զայդ նուիրագործում. ես, այո՛, զի ես սրտոդ զարթուցի, ես վերցուցի սրտիդ կափարիչն՝ ըստ բացատրութեանդ։ Մտերմութիւն մ'ունէինք հնուց. զայն հալեցուցի և ի սէր փոխարկեցի, որպէս զի տառապիմ ես ու տառապիս դուն ալ, Սրբուհի՛։ Ինչ, քեզ նման էակ մը, որ ակնարկովն աշխարհ մը կարող է ստեղծել և գրչին ծայրովն հոգիներ դղրդել, քեզ նման էակ մը պիտի ապրէ՞ր հասարակ մահկանացուի մը նման, պիտի մնա՛ր սովորական հոգերով ու սովորական հրճուանքներով։ Ո՛չ։ Ես արգահատեցայ քեզ այն աննշան անյոյզ կեանքին համար զոր դուն կը վարէիր, և զքեզ սիրեցի. ես հիացայ վրադ՝ յատկութեանցդ համար զորս կը ճանաչէի և յատկութեանցդ համար զորս կը գուշակէի, և զքեզ սիրեցի. ես ուզեցի բազմապատկել երազներս ու ցաւերս, և զքեզ սիրեցի. ես ուզեցի թանձր ե՛ւս առնել հոգւոյս մռայլն, և զքեզ սիրեցի. ես ուզեցի որ... Ահ, միթէ գիտե՞մ ամեն ինչ որ ուզեցի, ամեն ինչ որ պիտ' ուզեմ... բայց բան մը գիտեմ հաստատապէս.

ա՛յն թէ յաւիտեան այս աշխարհի մէջ չը պիտի համակրիմ այն անձանց որք կը հետամտին երջանկութեան. աշխարհս իր աշուններով, իր վերջալոյսներով, իր գերեզմաններով աւելի հրապուրիչ է քան իր վարդերով ու վարդագոյն աւօտներով, ու սուլթանաբնակ ալհամպրաներով: Երջանկութի՜ւն: Բայց երջանկութիւնն երեժկատուք ունի, մինչ սէրն հառաչանք ու հեծեծանք: Եղկե՜լի էակ այն, որ այլեւս պատճառ չունի հառաչելու, հեծեծելու:

Երէկ եկա՞ր Պէրպէրեանի հանդէսին. բեմին վրայէն, բեմէն վար, զքեզ փնտռեցի, չը տեսայ: Այլ եւս հինգշաբթի չը կա՛յ... բայց արձակուրդէն յետոյ, թերեւս. որովհետեւ՝ որպէս յայտնեցի քեզ՝ վերջնապէս մերժողական պատասխան տուի Հայրենիքի խմբագրապետութեան առաջարկին համար: Պատասխանս յուսահատեցուց Եուսուֆ պէյն, և չեմ կարծեր որ ստանձնէ սոյն ծանր գործն— Արեւելքի հետ մրցումն:

Այսօր Գուզկունճուք եկայ, չնորհաւորելու համար Վարդենիքի տօնախմբութիւնն: Սիրտ չունիմ. հօրաքոյրս հիւանդ, Մ...ն հիւանդանոցն, իր քոյրերն յուսահատ, Գ...ն անյայտ. և երկու կողմս մէյմէկ ուրուական, Պէյլիկճեանին ու Պէշիր Ֆուատին ուրուականներն: Ալիկիէրիի նման գոգցես

*մտած էի srsմաքախիծ fաղաfն...: Ու յիշեցի թէ այն սենեակին մէջ, երբեմն, հանգուցեալ Պէյլիկճեանին հետ վիճաբանութիւններ ունեցած էիր այնպիսի խնդրոց վրայ, որք կը լուծուին միայն դաշոյնի կամ ատրճանակի հարուածով, որք կը լուծուին կը հալին միայն Արնաւուտքէօյի հօսանքին մէջ՝ ջուրին ու կապարեայ գօտիին ցրտութեամբ...: Քոյրդ ինչպէ՞ս է: Վ...ն ինչպէ՞ս կը մխիթարուի տարակայութենէդ: Ե՞րբ զքեզ վերստին պիտի տեսնէ՝ ԵՂԻՍԱՆ:*

## XVI

*Սրբուհի ,*

*Չը գիտեմ ամսուն քանի՛ն է այսօր. բայց գիտեմ որ դեռ երկու օրեր կան— երկու դարե՛ր— Հասգիւղ գալու: Ուրեմն մինչեւ այն օր՝ խօսակցինք քեզ հետ քչիկ մը: —Տունն եմ՝ երկու օրէ: Երբ Պոլիս իջնեմ, մինչեւ իրիկուն բան մը չեմ լսեր, մինչ ամեն ոք կը խօսի, մինչ ամեն ինչ կը գոռայ չուրջս — իսկ երբ մնամ ի տան, որքա՜ն բան կը լսեմ, որքա՜ն ձայներ ու խօսքեր, ծիծաղաշարժ կամ սրտաշարժ: Երէկ՝ աշխատած պահուս՝ բաւական խնդացի. մեր քովի տունն էրիկ մարդ հիւր մ'էր եկեր, բարցրաձայն կը խօսէր. կ'ըսէր թէ այժմու երիտասարդաց նման ուսեալ չէր, թէ «վեշտասան մեշտասան չը գիտեր» ելն.: Ինչո՞ւ եկած էր այդ մարդն. արդեօք աղջիկտե՞ս եկած էր, եւ ինքզինքն եղածին պէս կը ներկայացնէր որպէս զի պատրանք չը կրէր աղջիկն ապա, որպէս՝ աւա՜ղ՝ կը կրեն այնքան աղջկունք:*

Մարդիկ ընդհանրապէս կ'երևին ինչ որ չեն հիմայ։ Հին բացատրութիւն մը համարիս թերեւս. որովհետև քեզ իմ անձս յայտնեցի. քեզ իմ անձս իբրև սատանայ մը յայտնեցի՝ մինչդեռ հրեշտակ մը գիս կը կարծէիր ցայնօր։ Ա՜հ, թերևս հրեշտակ եմ ծնած. սակայն սատանի դերն որքա՜ն հրապուրիչ է։ Տասնեւիններորդ դարուս մէջ մարդու մեծ վարպետն է բնութիւնն. և ատեն ատեն, ո՜հ, քանի՜ն խռովիչ է բնութիւնն։ Եթէ հանդարտ լճի մը չուրջ ապրէի, հրեշտակի պիտի նմանէի, այլ տեսայ մռայլ ովկէանոսն և իր դառն ալիքն ըմպեցի. ճանչցայ Պայրընն. և զայն իմ խորանիս վրայ դրի պաշտեցի...։ Ու ամեն անգամ որ այս բաներուս վրայ խօսիմ, չը գիտեմ ինչո՛ւ կը յիշեմ Օտեան էֆէնտին...։

Այսօրուան լսած խօսքերս ու ձայներս ալ պատմեմ։ Առտուն էր. դեռ չէին լսած սոխակներն. իչուն ձայնն՝ իբրև գերագոյն ներդաշնակութի՛ւնն՝ լսելի կը լինէր երբեք երբեք, ամեն ձայնից կը տիրէր, և սիրտս՝ որպէս միշտ՝ ի խոր կը յուզէր. կը յիշէի՛ Հասգիւղս։ Եւ ահա ձայն մը աւելի բարձր, աւելի վսեմ, լսուեցաւ։ Աստուծո՛յ ձայնն ի՛նձ համար իչուն ձայնէն աւելի վսեմ է. միթէ Աստուա՞ծ իջաւ Իւսկիւտարի բարձանց վրայ և խօսեցաւ։ Ո՜հ, ո՛չ, խենդ մը... ո՛չ մեր Մ...ն, հէգ Մ...ն հիւանդանոցն է.

և լաւագոյն վիճակի մէջ է։ Մեր դրացեաց մին խնդեցաւ այսօր։ «Բա՛, մի՛ վախնար, ի՞նչ կը վախնաս կոր, էշէ օղլու էշէ՜կ։» Այսպէս կ'աղաղակէր մեր դրացին. սափրիչ է. կարծեցի թէ ակռայ կը քաշէ։ Սակայն մտածեցի թէ այդ պարագային մէջ մեղմիւ պիտի խօսէր, մանաւանդ առանց հայհոյանաց. ընդհակառակն կը պոռար։ Դիւահար եղայ։ Խե՛ղճն, ինք ալ դիւահար էր։ Շարունակեց գոչել «Մօ՛տ վառեցէ՛ք, Աստուածամարը կուգէ կոր. Հո՛ւփ, մօ՛տ վառէ. Հուփ Աստուածամարը խնդեցեր է. էշէ օղլու էշէ՜կ.» և խօսքն յանկարծ երգի կը դարձնէր. ի՜նչ երգ. հէյամօլայի եղանակն, որ կը քաղցրանար խնդլին չրթանց վրայ....։

Ա՜հ, թո՛ղ սիրելի սանուհիներդ, թո՛ղ սիրելի սանուհիներս նորէն Տէր-ողորմեա ըսեն....։ Որքա՜ն յուզեց զիս նամակիդ այն կտորն, ուր կը գրես թէ աշակերտուհիներդ հիւանդիս համար Տէր ողորմեա ըսել խորհած են. ազնի՛ւ, ընտի՛ր հրեշտակայի՛ն էակներ, կը զգան թէ ի՛նչ սիրով կը սիրեմ զիրենք, և ինձ հետ կը տրտմին և ինձ հետ կը բերկրին։ Ես եւս յուզուեցայ, երբ դու ալ քու հիւանդիդ համար աղօթելու կը պատրաստուէիր՝ ըստ գրոյդ։ Իսկ յուզումս չափ չունեցաւ, երբ նամակիդ վերջն հասայ, ուր զիս

Կ՚երդմնցնես որ ծով չը նստիմ, նաւակ չը նստիմ։ Հոն վիպական, սիրային, երկնային չեշտ մը կայ, որ թափանցեց հոգիս։ Կը խոստանամ, խոստանամ, ո՛ սէր իմ։ Այլ դուն փոխարէն ի՞նչ կը խոստանաս ինձ. կը խոստանա՛ս ինձ ներել այն վշտերուն համար զորս փափուկ սրտիդ առթեցի և պիտ' առթեմ... քու յանցանօքդ, այնպէս չէ՞։ Կը յիշեմ, օր մը, գրեցիր ինձ որ Ալֆրէտ տը Միւսէի վրայ խօսիմ. և ես՝ ի պատասխանի՝ Ալֆրէտ տը Միւսէի պէս խօսեցայ, նուազ իր հանճարոյն անշուշտ։

Հինգշաբթի՛։

## XVII

ԻՃԱՏԻԷ , 8 Հոկտեմբեր

Սրբուհի ,

Քեզ միշտ հաճոյքով պիտի գրեմ , այլ և միշտ տխրութեամբ , աւա՜ղ ։ Աւաղ ոչ ինձ համար անշուշտ , այլ քեզ համար , քանզի կը փափաքէիր որ տարբեր Մուսայէ մը ներշնչուէի ։ Ցոյժ կը ցաւիմ որ տարիէ մ'ի վեր վըրդոված եմ սրտիդ անդորրին ։ Եթէ այն աշուններէն մին՝ որք մահաշշո՜ւնչ կ'անցնին գըլխոյս վրայէն՝ զիս ալ հողմավար թերթին հետ տանէին ու մութ փոսին մէջ նետէին , անշուշտ կ'արտասուէիր վրաս , բայց սուգդ յաւիտենական չէ՛ր ըլլար · զի մեր շրթունք իրարու չհպան դեռ , և սիրոյ արտասուքն , ո՜հ , քառեակ այտից կազմած փոսին մէջ չը լճացան դեռ ։ Հոգեկան սիրոյ մեծութիւնն ո՞վ կրնայ պատմել · սակայն ո՞վ կրնայ պատմել · սակայն ո՞վ կրնայ ժխտել հպման հեշտութիւնն՝ որ կը հատանէ թերևս սիրոյ թեւերն , այլ որ կաթնաւէտ լոգարանի մէջ կը

*վերանորոգէ զայնս։ Եթէ վախճանիմ, Սըրբուհի՛, այո՛, կ'ազատիս ինէ, զի կը տանջեմ այժմ զքեզ...։ Կը զգամ թէ կը սիրուիմ ի քէն. և վերջին նամակիս առթած յուզումն, որ զքեզ խոնարհեցուց աչացդ, իմ աչացս ե՛ւս առաւել բարձրացուց զքեզ...։ Էր կը յուզուիս, երբ մահուան վրայ կը խօսիմ. ո՞վ է որ իր սիրած էակին հանգստեան չը ցանկար. մահն ինձ համար հանգիստ մը պիտ՝ ըլլայ. և դու կամի՞ս որ տանջուիմ ու տանջեմ զքեզ։ Երբ այլեւս չ'ըլլամ երկրի վրայ, կրնաս մխիթարուիլ՝ դասելով զիս ի շարս այն սիրավէպերու դիւցազանց, որոց օր մը համակրեցանք, որոց վրայ ուրիշ օր մը լացինք, զորս ուր ուրեմն մոռցանք։ Եւ միթէ գոյութիւն ունի՞մ ես. միթէ վիպային, երեւակայական էակ մը չէ՞ նա՝ որ օր մը Մելանիա կը կոչուի և օր մը Եղիա։ Ահ, մոռցի՛ր զիս։ Արդէն կը մտաբերեմ հրաժարիլ վարժարանէն. քանզի երբ կը մտածեմ թէ մէկ ոսկւոյ ամսաթոշակս առնալու համար...նամակ գրելու է նորէն ամէն ամիս, թերեւս քանի՛ մը նամակ։ Ատկէ ծանր բան չը կայ ինձ համար. դրամ ուզելու համար բերան ծռե՛լն՝ ատի կը սպաննէ զիս։ Կը փնտռեմ արդէն Թիրեաքեանն, որովհետև այդ միակ անիծեա՛լ ոսկին կարեւորութիւն ունի իմ հաշուեկշռոյս մէջ...։ Ինչո՞ւ այնքան աչքի լոյս թափեր ենք, ին-*

չո՞ւ մազերնիս ճերմկցուցեր ենք . . . ։ Զունենայի՛ գէթ տրտմութեան այս նիւթական պատճառներն . . . ։ Բախտն այսպէ՞ս վարուելու էր ինձ հետ որ խառա սեվտա ունիմ, որ ամեն օր անձս ոչնչացնել կը մտաբերեմ։ Գիշեր բարի․ չը գիտեմ ինչ գրեցի։ Լաւ մը քնանայի՛ ։

## XVIII

*ԻՃԱՏԻԷ, 7 Նոյեմբեր*

*Սրբուհի,*

*Դեռ այսօր կը գրեմ նամակիդ պատասխանն, և չը գիտեմ ե՛րբ պիտի կրնամ գալ Հասգիւղ: Այս առաւօտ դասիս ժամերուն Գատըգիւղ էի, մօրաքրոջս տունն, ուր էր նաև Օհան էֆէնտի Պաղտատլեան: Վաղը նշանտուքի պիտ' երթանք ի Պատրիարքարան: — Պիտի ջանամ ուրբաթ դասի գալ: — Զը պիտի զարմանաս երբ յայտնեմ թէ մերժեցի Կեդրոնական վարժարանի գրականութեան դասը, զոր առաջարկեց ինձ սոյն կարեւոր հաստատութեան խնամակալաց ժողովոյն Ատենապետը. կը յիշես թէ երկու տարի առաջ բողոք բարձի հրապարակաւ ընդդէմ խնամակալութեան, որ վարժապետութեան միակ ներկայացուցիչ մ'ընդունած էր իր ծոցին մէջ, Մինաս Չերազը: Բարոյական մահուան դատավճիռս ես իսկ տուած պիտ' ըլլայի, խնամակալութեան առաջարկն ընդունելով այ-*

սօր։ Չէի ուզեր վշտացնել Խայեանն ու Չերազն. և բաւական վարանեցայ որոշումս տալէ յառաջ։ Միայն մօրս համար — զոր կը փափաքէի աւելի հանգիստ ապրեցնել — կը միտէի այդ բարոյական մեծ զոհողութիւնն ընել։ Այլ ի՞նչ նիւթական վարձատրութեան փոխարէն.— տարին 30 ոսկիի փոխարէն։ Ութսուն երկու աշակերտներէ բաղկացեալ երկու դասի գրականութիւն ուսուցանել, ամեն անգամ սրբագրելու համար ութսուն երկու շարադրութիւն գրպանդ դնելով. և ընդունի՛լ տարին 30 ոսկի։ Շաբաթն երկու ժամ միայն դաս, այո՛. բայց պէտք է առ նուազն 24 ժամ զոհել սրբագրութեանց. ժամը քանի՞ կուգայ. հաշուէ՛։ Անհաւատալի կը թուի թէ Պէրպէրեանի նման ուսուցիչ մը յանձն առած է սոյն պայմանօք դասախօսութիւն։

Գրասէր ու գրագէտ նոյն նշանակութիւնն ունին մեր ազգին համար. ծառայ և վարժապետ նոյն յարգն ունին մեր մեծատանց համար... բայց ես որոշած եմ յարգել տալ ինքզինքս անոնց. Պէրպէրեան նոյնն ուխտած է, և ազդու դաս մը տալով առ խնամակալութիւն՝ հրաժարած է Կեդրոնական Վարժարանէն։ Խեղճ Չերազս. հլու գործիք եղաւ մե՛ծ աղաներուն. Կլատըստոնի և Անտրասիի հետ տեսակցող Չերազը, Գրական Փորձերու և Ազգային Դաստիարակութեան հեղինակը եռանդալի ու հանճա-

ըալի այն արտաքոյ կարգի պատանին՝ բոլոր օրը կատավարչութիւն կ'ընէ, հուրը մարեր, մոմեա մը դարձեր է ....:

Բայց ես օ՛ր մը բերկրուիթ, բայց ես օ՛ր մը մխիթարական բան չը՞ պիտ' ունենամ քեզ հաղորդելու. մի՞նչ պիտի հեծեմ, մի՞նչ կենաց գո՛րշ կամ մթին պատկերներ պիտ' որոնեմ ու քեզ ներկայեմ. քեզ՝ որ աշնան մէջ կը լռեսես երկնից ժպիտն և զայն թըղթակցութեանդ մէջ կը լուսանկարես Եղիային համար, քեզ, որ Եղիային աններդաշնակ անունն իսկ երբ երկվանկ մեղեդի մը կը համարես, և այդ անուան նկատմամբ հակառակ կարծիք ունեցող մէկ սիրելի էակիդ դէմ կը վշտանաս և իրմէ կը հեռանա՛ս: Հասուն միտք մը մատաղ մտաց միամիտ վիճակին վերածե՛լ. Քրիստոս չը կրցաւ ընել այդ հրաշքն. այլ սէրը կ'ընէ զայն: — Այլ միթէ Է...ն իրաւունք չունէ՞ր որ կ'ըսէր թէ կոյր է սէրն: Ի՜նչ ձիրք ունիմ Սրբուհի, այդքան սիրոյ արժանանալու համար: Քանիներ ըսած են ինձ թէ զիս կը սիրեն. քանինե՛ր՝ ըսելէ աւելի ապացուցած են իրենց սէրն: Եւ ես զիս քըննելով՝ գտած եմ թէ աւելի խորշելի քան սիրոյ արժանի էակ մ'եմ: Մի՛այն... յուսահատութեան վայրկեաններուս երբ յերկին հայած եմ՝ կոչելով մահուա՛ն հրեշտակն, սև անհագին անբարբառ ամպի մ'իտես՝ ըսած եմ.

«Գլխոյս կը նմանի. վսեմ է այդ ամպը։» Ի՞նչ կը խորհիս...։ Թերեւս... ամպ մ'ալ դու կը դիտես այս պահուս յերկինս. և զի՛ս կը յիշես թերեւս։ Եւ թերեւս կ'ըսէք միաձայն. «Ամեն մարդ լուսնին կը նայի. միթէ ամպն աւելի յանկուցիչ չէ՞։ Մարած հրաբուխներ միայն ունի պայծառ Լուսինն. իսկ սև ամպին ծոցը կը թաքչին հուր ու փոթորիկ ու սարսափ։ Ամպն աւելի վսեմ է քան զլուսին։ Մենք ամպին կը նայինք։»

Գիշե՛ր բարի քեզ։

## XIX

ԻՃԱՏԻԼ, 1 Դեկտեմբեր

*Սրբուհի՛,*

*Թուի իմին՝ ինձ ակամայ կը գրես ժամանակէ մը հետէ ։ Չը պիտի չարունակեմ թըղթակցութիւնս, որպէս զի չը նեղուիս, քանզի պարտիմ ինձ խնայել քեզ իբրև ամենափափուկ ճակի ։ Ե՛րբ սրտէդ գայ, յայնժամ գրէ, և եթէ սրտէդ թշնամանք կամ անէծք ելնէ, նորէն գրէ՛, քանզի այդու ոչինչ պիտի կորուսանես սրտիս մէջ ։ Միայն թէ ակամայ բան մի՛ գրեր ինձ ։*

## XX

ԻՃԱՏԻԷ, 15 Հոկտեմբեր

*Սիրուհի,*

*Վերջին նամակդ մատեան մ'է, ընդարձակ բազմազան մատեան մը, որ իր վիպական մասն ունի, բարոյական մասն ու քննադատական մասն։ Եւ յաւէտ կը հիանամ այն փափկութեան վրայ, որով կը քննադատես կեանքս ու արարքս. ի զո՜ւր են սակայն ամէն քննադատութիւնք, որքան բարձրէն ալ գան ու որքան փափուկ հոգիէ. կը գործեմ անգիտակից զօրութեան մը նման, կ'ապրիմ տարերքի մը նման։ Վա՜յ անոնց որք ինձ հետ կենակցութեան դատապարտուած են, որք ինձ հետ յարաբերութեան հարկադրուած են։ Դժգոհ է ամէն մարդ ինէ, և անոնք ամենէն տժգոհ՝ որոնք ամէնէն աւելի զիս կը սիրեն։ Այսպէս դո՜ւ....։*

*Քանիցս կարդացի նամակիդ առաջին երկու երեսներն, որոնց հոգեբուղխ երաժշտութիւնն ապաքէն կը գերազանցէ Տէմիրճիպաշ-*

եանց երեկոյթին մէջ, յետին յուզմամբ ունկընդրուած երաժշտութիւնդ։ Ա՜հ, սէ՜րն...։ Ու դեռ շատ անգամ պիտի կարդամ այդ էջդ։ Բայց «այլեւս չը պիտի գրես ինծի, այլ եւս չը պիտի սիրես զիս»։ Մաղթելի էր որ կարենայիր, քանզի սիրոյ փոթորիկներուն մէջ, ա՜հ, կը փնտռուի այն կեանքն որ սրտի մակերեւոյթին վրայէն կը սահի խաղաղ անխռով...։

Քու կեանքդ, դժա՛ր է քու կեանքդ. կայ ի քեզ վիպական Սրբուհին, եւ կայ բարոյական Սրբուհի՛ն, պարտուց գերին։ Պա՛րտք, ի՜նչ անախորժ բառ. համանիշ են իրեն աշխատանք, արտասուք՝ որ դառնութիւն չունի, մտածութիւն՝ որ առարկան այտ չունի. մայր մը, հայր մը, քոյր մը կամ եղբայր մը, պէ՛տք է ապրիլ անոնց համար, պէ՛տք է մեքենայի գործ կատարել, պէտք է զրկուիլ ու զոհուիլ. ի՜նչ արձակ ու տափակ բան։ Եւ սակայն ինչո՞ւ համար խոստովանութիւնդ՝ զոր մասամբ կը մակաբերէի՝ կարդալէ յետոյ զքեզ փնտռեցի, Սրբուհի՛, որպէս զի քեզ երկրպագանէ՛ի։ Բայց անգամ մը կարդացի այդ խոստովանութիւնն եւ հինգ անգամ Տէմիրճիպաշեանց երեկոյթին նկարագրութիւնն, ուր վիպային Սրբուհին կը բարբառի կամ կը դաշնակէ։ Վ...դ կարդացի՞ր այդ նկարագրութիւնն. եթէ ոչ, օր մը զայն ես պիտի կարդամ ձեր տունն։

*Հրաժարականիս շարժառիթն երկուք չէ․ Տաղտկալի է, ծանր է ինծ դրամ խնդրել։ Ամեն անգամ որ ամսականս խնդրելու համար նամակ գրեմ, պիտ' անիծեմ ա՛յն օրն ուր ոտք կոխեցի վարժապետական ու գրական ասպարէզին մէջ. ես ինծ դէմ պիտի զայրանամ ու պիտի լամ։ Արդ, մի՛ վշտանար, եթէ հրաժարիմ։ Իմ փափաքս էր շաբաթն երկիցս գալ Հասգիւղ այլ եթէ անգամ մ'իսկ չը գամ, սիրտս պիտի գայ հոն հանապազօր, և զիրար տեսնելու առիթներ պիտի կրնանք գտնել։ Ի կրկին տես....։*

## XXI

ԻՃԱՏԻԷ, 29 Դեկտեմբեր

Երկրագունտն երէկ աւարտեցի. այսօր կ'ելնէ մամլոյ տակէն: Հանգիստ եմ այսօր՝ որպէս ոք որ դիւցազնական աշխատութիւն մ'է կատարած: Եւ արդարեւ՝ այն պայմանաց մէջ յորս կը կատարուի՝ կարի դժուարին աշխատութիւն մ'է փորձերու սրբագրութիւնն. եւ երբ այդ պայմանաց վրայ յաւելուս սրբագրողին խառնուածքն, հոգեկան վիճակն, ելն, յայնժամ իրօք դիւցազնական աշխատութիւն պիտի համարիս ամենադոյզն աշխատութիւն մը: Սիրել, հայեցողական հանդարտ կենաց կամ ծայրագոյն տագնապայոյզ կենաց համար համակրութիւն ունենալ, եւ զբաղիլ փորձերո՛ւ սրբագրութեամբ, մեքենային մօտ՝ որ կը ճռնչէ, տառերու արկղիկներուն մէջտեղ՝ որք փեթակի մը երեւոյթն ունին այլ միա՛յն երեւոյթն, ոտից տակ ձեռագիրն՝ որ վրայ կը գուրգուրար հեղինակն ու գլխոյդ վրայ մամլոյ տակէն նոր ելած նամէտ Ֆօռմաներն՝ որք կախուած են չորնալու

համար և որք կոչուած են թերեւս վերատին թրջիլ անանուանելի ուագաններու մէջ։ Ծանր ու ծանրատաղտո՜ւկ գործ առ մեզ՝ հեղինակի կամ խմբագրապետի գործն։ Երբ երկասիրած պահուդ քիչես տպարանն, ո՜հ, գրիչդ, թուի՜չդ կը կասի։ Երանի՜ անոնց՝ որք միայն կը կարդան կամ որք միայն կը գրեն իրենց համար, առ առաւելն մտերմի մը, մտերմուհւոյ մը համար։

Բայց ամենէն աւելի երանելի արարածք ատ են անոնք ապաքէն, որք միայն կ՚ուտեն և կը մարսեն։ Անսահման կամ մեքենական շրջանակէն արտաքոյ չիք երանութիւն։ Կիրակի մեր սիրելի Մ...ին հետ այս նիւթին վրայ կը խօսէինք։ Միայն թէ ... այդ հէ՜գ երիտասարդին հետ բաղդատելով՝ քանի՜ո՜ն երջանիկ ենք մենք։ Իր սահմանն իր սենեակին դուռն է գրեթէ. իր յուսոց հետ վերածուեցան իր երազներն. և առողջ այտ մը չը մտենար իր շրթանց, թէև այնքան սուրբ ըլլան բարոյապէս։ Սպիտակ թել մ՚իսկ չունի դեռ մօրուքին մէջ, և իր սրտին մէջ կը տիրէ յաւիտենական ձմեռն։ Ահաւասիկ վիճակ մը, զոր երեւակայելով իսկ կը սոսկայ մարդ։ Եւ երբ այդ վիճակին դատապարտուած է սիրելիդ...։ Ի՜նչ երանելի, ցանկալի վիճակ է մերն՝ համեմատութեամբ։

Նոր տարին կը հասնի։ Միմեանց մենք

բարեմաղթութիւններ կ'ընենք, և պատճառ մը չունինք չը հաւատալու մաղթանաց կատարման։ Սակայն տարաբաղդ Մ...ին համար՝ հրաշիւք միայն կրնայ բարեփոխութիւն մը տեղի ունենալ իր նաեհին մէջ։ Եւ Մ... շատ իմաստասէր է հրաշքի հաւատալու համար։ Խորհի՞նք, Սրբուհի, խորհինք՝ իր մանկութեան հաւատքն իր հոգւոյն վերադարձնելու, քանի որ՝ բաւէ՛՝ կարող չենք իր մարմնոյն վերադարձնել պատանեկութեան առողջութիւնն...։ Եւ եթէ կարենայինք այդ գիւտն ընել, ինչ անկշիռ ծառայութիւն պիտի մատուցանէինք առ մարդկութիւն։ Քանինե՜ր որք կամէին վերադառնալ, որք կամէին հաւատալ, որք կամէին տալ այն արտասուքն որ կը զօրացնէ, որ կը բուժէ հոգին ու մարմինն իսկ յաճախ։ Երբ գտնենք այն ցանկացեալ համադեղն հոգւոյն, յայնժամ կ'ընդունիմ կենացս համար բոլոր բարեմաղթութիւններդ յաւէտ սրտագին։

# 1888

## XXII

ԻՃԱՏԻԼ, 14 Յունիս

*Սրբուհի,*

*Բաւական ժամանակ է՝ չենք գրած իրարու։ Մեր ընդմէջ թղթակցութիւնն հաճոյք մ'է, կամ սրտի պէտք մ'է։ Պարտքեր ունեցանք կատարելու, և սիրտք մեր անկարող եղան տալ իրենց պիտոյքն։ Ի՛նչ պարտքեր, ի՛նչ հարկեր, դո՛ւ մանաւանդ։ Մեր հիւանդն հիւանդանոցն է, նոյն վիճակին մէջ գրեթէ, քու հիւանդդ ո՞ւր է.........։ Մէկ հատիկ քոյրդ, — քանզի մեր սիրելիները զորս հողուն կը յանձնենք՝ մէկ հատիկ կը թուին մեզ ու մէկ հատիկ քոյրդ՝ որուն հետ մեծցած էիր մտաց ու սրտի հաղորդակցութեամբ —, զայն յանձնեցիր խե՛լ մը քոյրերու, որք համայնից քոյր կ'անուանեն զանձինս, և այդու պատճառաւ իսկ ոչ ուրուք են քոյր, քոյր և ոչ ումեք...։ Այդ քոյրերուն*

*մէջ իր քոյրը փնտռեց, և մենք յառաջ՝ հէգ մանկամարդ կին՝ ինքն իր վրայ ողբ կարդաց «Հէգ Ե......»։*

*Հիմայ չը գիտե՛մ ով աւելի երանուհի է...։ Քոյրդ երբ կ'ապրէր ու դեռ հիւանդ չէր, յայնժամ, այո՛, դուն քան Ե...ին երանագոյն էիր, Սրբուհի, քանզի գերիվեր էիր աշխարհէ, քանզի ռամկօրէն այլ ճիշդ բացատրութեամբ «աշխարհ մտած չէիր։» Երբ քոյրդ հիւանդացաւ, երբ մանաւանդ իր հիւանդութիւնն անդարմանելի վճռուեցաւ, երբ աշխարհէ հեռացաւ հիւանդանոցին մէջ մեկուսացաւ, թէեւ կը տրտնջար, այլ արդէն երանագոյն էր քան զքեզ։ Հիմայ՝ եղկելի՜ Սրբուհի...։ Արդարեւ աշխարհ չես մտած, այլ սեւ քօղի մ'ընդմէջէն այլեւս պիտի տեսնես զաշխարհ։ Եւ եթէ թողուս երբէք դու սեւ հագուստդ, առաւօտ մը պիտի տեսնես Արշալոյսն՝ հագած է քու թողած սեւ հագուստդ. այդ ստուերն զտիեզերս պիտի ծածկէ՜։*

*Այլ... վայրկեաններ պիտի ըլլան, կենացդ մէջ պիտի պատահին շա՛տ վայրկեաններ ալ, ուր սեւազգեստ տրտմաթախիծ էակ մը քեզ իբրեւ լուսապայծառ գեղածիծաղ հրեշտակ մը պիտ' երեւի՜։ Բնութիւնն այդ հսկայագործութիւններն ունի։ Բնութի՛ւնն, անի՜ միայն գիտէ նորոգել մեր*

սիրտն։ Իր տրամութիւններն անշուշտ ունի բնութիւնն ալ, և իր ողբերգութիւնն ալ որք անտառաց կամ անդնդոց խորերէն կը հասնին մեզ՝ յաճախ խռոված են մեր հոգւոյն խաղաղութիւնն։ Այլև բնութիւնն ինք միայն գիտէ, ինք միայն կարող է խայտացընել թախծեալ հոգին։ Օրէնքն է այս։ Ցուրտ կամ բարի, պիտի կրենք զայն առ հասարակ, մինչև որ յանզգայս մեր արտևանանց վրայ ծանրանայ մե՛ծ ստուերն Նիրվանայ....։

## XXIII

ԻՃԱՏԻԷ, 24 Օգոստոս

Պատուհանին առջեւ նստած, կը յիշեմ, ո՜վ անմոռանալի Սրբուհի։ Կը յիշես Հասգիւղն, անմոռաց այն Հասգիւղն։ Ամայի Հասգիւղն, որ սակայն լի է միշտ, ուր եղերգք միշտ կ'երգուին, ուր եղերերգութիւնք միշտ կը կատարուին։ Ձմեռն ի Բերա, ամառն ի բարձր Պոսֆոր կամ ի Բոյնքիրօ կը զուարճանայ բարձր դասն. այլ բարձրագոյն ստեղծմունք, նախասահմանեալ էակք, գերագանց հոգիք, անդ, ի Հասգիւղ, կ'ապրին լաւագոյն կեանքն, հծծելով ու հիւծելով, գարնան առաջին գեղգեղանքներուն ի լուր, տխուր, աննշան մահաշշուկ նուագներուն ի լուր՝ խօլ զուարթ, բոց ու հուր, միշտ հակառակելով բնութեան, միշտ գգուեալ ի բնութենէն, միշտ դժգոհ ու միշտ երանիկ...։

Ինձ կը թուի թէ Հասգիւղ ես, Սըրբուհի՜...։ Կը մօտենան դպրոցին օրերն։ Հովն աւլէ պիտի, պարտէզին տերեւներն

այն դաստարանը բերէ պիտի, ու դուն՝ որ այն դալկահար թերթից վրայ կը կարդաս աղեկեզիկ բառեր անտես և անհաս էակաց ձեռօք գրուած՝ պիտի յուզուիս, պիտի զգաս արտասուքներն որք կը վազեն վեր՝ յաչացդ հոսելու ու թերթ ու դաստարան ողողելու համար. և դու պիտի ձեռքերդ, ո՛չ, կամքդ աչքիդ պիտի տանիս՝ որպէս զի թումբ կազմէ սրտիդ և չը յորդէ այն և չը մխիթարուիս։ Ա՜հ, ի՛նչ դառն է կեանքն. քանի՜ն անըմբռնելի։ Սակայն պէտք է ապրի՛նք. պէտք է ապրիս, Սրբուհի՛։

Միայն անէութեան հաճոյք կրնան գերազանցել այս հաճոյք-տառապանքներն. այլ ո՛վ գիտէ, թերևս Նիրվանան չէ մեզ սպասողն, ո՛վ գիտէ, թերևս երանաւէտ հոգւոց անվիչտ այլ անզուարճ անտանելի կեանքն է այն։ Յայնժամ ի՛նչ տանջանք։ Ապրի՛նք. մի լսեր Ռաֆայէլի մոգիչ ձայնն՝ որ հեկեկէ «մեռնի՛նք»։

Ու քեզ բառ մը չունիմ շնորհակալեաց՝ սքանչելի ընծայիդ համար. բառ մը շնորհակալութեան անուանդ տարեդարձին առթիւ։ Քանզի ես այսպէս և քանզի դու կը հասկնաս զիս.....։

# 1889

## XXIV

*Սիրուհի,*

*Ինչ թիւրիմացութիւն եղած է։ Խաչկեան կիրակի Իսկիւտար եկաւ զքեզ հոն գտնելու հաւաստեօք. տունէդ այնպէս ըսած էին թէ չաբաթ երեկոյ մեկնած էիր Հասգիւղէն։ Անհամբեր եմ Հասգիւղ գալ։ Կը տագնապիմ։ Թէեւ..... է՞ր ծածկեմ... չար ոգին՝ որ էութեանս խորհրդաւոր խորութեանց մէջ կը թաքչի՝ մեծ գոհութիւն պիտի զգար եթէ անյայտ եղած ըլլայիր։ Չը գիտես որքան կը տանջէ զիս ոգին չար՝ զոր քեզ կամ ընդ իս կը տանիմ։ Ցերեկն երբ սաստկապէս յուզիչ լուր մը չառնում կամ տարօրինակ դէպքի մ'ականատես չը լինիմ, երիկամանցս խօրն՝ երեկոյին՝ խուլ ձայն մը կը սկսի որոտալ, մութ ու մեռելայարոյց ձայն մը՝ դիւաց արշաւանքի մը ձայնին նման։ Հուսկ ապա բառերն որոշ որոշ կը լսուին. երկաթեայ բառեր, հրաշէկ երկաթի բառեր յանդիմանու-*

թեան, որոնք գիս կը պատուհասեն աշխարհի տափակութեան, մարդկային կեանքի միօրինակութեան համար։ Մարդ մը, սիրեցեալ մը, պաշտեցեալ, անյա՜յտ եղած է, բնա՛ւ հետք.— Ալէմտաղին ամբողջ, անծայրածիր անտառն, ամբողջ այրած է. ու «Պայրընի Վարդենի»ն տժգոյն՝ բոցոյ գոյն զգեցած է պահ մը և ապա աճիւն դարձած յաւիտեան.— Բուինքիրօյին գագաթէն, չոճեաց զմրուխտին մէջէն յեղակարծ իմն արտացայտած կեդրոնական հուրն երկրագնդին և մեծ կղզին՝ իր մեծասքանչ վիլլաներով՝ ալեաց, անդնդոց տակ է խորասուզուած.— Կալաթա-Գուլէսին փլած է՝ փապուղւոյն կքմամբ, ու դարաքանդակ իր քարերն՝ արեան հեղեղներէ վարեալ՝ գլորած են որոտաձայն Ոսկեղջիւրի ծոցն.— Հոն ուր Պոնտոս կ՚ընդհատի Միջերկրականին, Սարայ-Պուրնույին առջեւ Գըզ-Գուլէսիի շուրջ, ալեաց անլուր գուպար մ՚է կատարուած, ուր Նուագք ալ են մասնակցած ու ծովն իր փրփուրներն նետած է մինչեւ Նոճեաց կատարն, ու ճերմակ փրփուրք ծովուն՝ ոսկի վանդակներէ ներս են թափանցած և սպիտակադոյն մարմնոյ հետ հեշտագին ոգորումներ ունեցած և հրեղէն էակներ իրենց ցրտագին եռացման մէջ սառեցուցած.— Էյուպ-Սուլթանի բազմադարեան դամբարանաց խոնաւութենէն ծնած ու սնած

գէջ ճիւաղ մ'անդրջրհեղեղեան Պահարիյէյէն Գարաղաճ կենդանի կամուրջ է կազմած և իր չուրջ ծաւալած խաւարն անկարող են ի բաց փարատել արփենի ճաճանչք ու նշոյլք ամենալոյս համաստեղութեանց.— Թեադրոհանէի գետակէն անդիմադրելի յուշկապարիկ մ'ելեր է, որ դիւթական այն վայրաց բոլոր այցելուներն յանկուցանելով Զագլաղանի ջուրց մէջ կը խեղդէ.— Էյֆէլի աշտարակին կատարն հրեշտակ մ'երեւցած է՝ ի ձեռին փող ահագին՝ որ կը գուժէ վախճանն էից ու կատարումն աշխարհի։

Ա՜հ, մեծահարուստ ոք ըլլայի, ու թերթ մը հրատարակէի որ այնպիսի լուրեր ստեղծէր գէթ, և գոհ ըլլար չար ոգին որ յիս կեայ, և զիս չի տանջէր այլեւս չար ոգիս անխնայ։ Բայց ի՞նչ եղար, Սրբուհի, չաբաթ գիշեր ո՞ւր գացիր. իրօք եկա՞ր արդեօք Գուզկունճուգ ու Թաւուտներու տակ թաքուցիր եթերային մարմինդ. կամ թերեւս Հասգիւղի գերեզմաննե՞րն ելար այցել, մեռելոց ոգիներուն հետ խօսակցիլ. դամբանաց հարցնել՝ բնաստեղծին նման թէ ի՞նչ կ'ընեն հոգիներն կամ մարմիններն ոյք իրենց կը յանձնուին, կամ հարցնել դամբանաց թէ ինչո՞ւ կը մաշեցնեն, կ'իւրացնեն տակաւ ու հուսկ ուրեմն կը ջնջեն կենդանի ձեռաց հետքն ի վերայ մեռելոց հանգստարանին։ Իրօք անյայտ չեղա՞ր,

*Սրբուհի՛. երբ Հասգիւղ գամ գքեզ հոն չը՞ պիտի փնտռեմ. հոն կամ այլուր. գքեզ պիտի՞ գտնեմ Ներսէսեան վարժարանի մէջ, միշտ նոյն, միշտ համակիր ինծ կամ միշտ սիրահար իմ անծանօթ հանգամանացս, իմ անարտայայտ հրապուրանացս. գքեզ պիտի գտնե՞մ յաւէտ փափուկ, յաւէտ բարձրախոհ, յաւէտ սպիտակ արտաքուստ* էլիօդրօբի *մը նման ու ներքուստ հուր հրաբուխ, բոց ու բորբոք յափշտակման։ Յաւէ՜տ ի քէն պիտի ընդունի՞մ ազնուաբոյր այն գիրերն, որք սրտիդ թերթերն են քան թղթի գրեալ թերթեր. անէծքդ յաւէտ ճակատագրի՞դ պիտի ուղղուի և երբէ՞ք ինծ. երբէք չը՞ պիտի թշնամանես զիս, ինծ դէմ երբէք չը՞ պիտի հայհոյես. երբէք չը՞ պիտի մոռնաս Եղիան. այդ յեղյեղուկ հոգւոյն յարեա՞լ պիտի մնաս յափշտական. յաւէտ հրեշտակային համբերութեամբ պիտի տանի՞ս իր յիմարութիւնը։*

*Եթէ կատաղի շան մը նման ոռոքէդ ալ բռնէ, դեռ ժպիտով ու համբոյրներով ու վարդից փունջերով պիտի վարձատրե՞ս իր վայրագութիւնն։ Ընդէ՞ր չես ուզեր բժշկուիլ հաւատքէդ թէ զիս Աստուած մը կայ, ո՛չ. զիս Աստուած մը չունիմ. և կամ զիս դեռ հզօրագոյն է քան զԱստուած։*

*«Խե՛նդ տղայ» կ՚ըսեմ ես ինծ, երբ կը մտածեմ թէ բերկրանքս անհուն պիտի լինի, երբ չորեքշաբթի առնեմ վերային գքեզ ողջ առողջ ի Հասգիւղ։*

## XXV

Իճատիէ, 31 Մարտ

*Սրբուհի ,*

*Բաւական ժամանակէ հետէ գրչիս ներքև եկած չէ անունդ, ամփոփուած կրկին բառիցն գերագոյն՝ Սիրոյ և Սրբութեան. անունդ զոր կը մրմնջեն սակայն իմ շրթունք կամ կը մըրմնջեն կոհակունք, որժամ հակառակ պատուէրիդ՝ թեթև լաստի մը յանձնեմ զանձս և անդնդոց վրայ ծփամ ծայրախորհո՛ւրդ....:*

*Ծայրախորհո՛ւրդ մակդիր յարմար, մակդիր յարմարագոյն անտարակոյս բարեկամիդ համար։ Եւ դու, որ զիս կը յանդիմանես ծայրագոյն կամ ծայրայեղ խորհրդոցս համար, յաւէտ պիտի պատասխանեմ քեզ, կամ բանիցդ ի լուր պիտի կողկողիմ յաւէտ - ո՞չ ապաքէն քեզ նման էակաց հանդիպումն է՝ որ կ'արժանացնէ զիս մակդիրներու ծայրագոյնին 'ի բարին և ի չարն....:*

*Զքեզ կը թշնամանե՞մ միթէ, դիւային դե՞ր կ'ընծայեմ քեզ, հրեշտակահռչակդ ի համայնից։ Եւ ընդէ՞ր ոչ. ընդէ՞ր վարանիմ և ընդէ՞ր խղճամ. քանի որ Չարն՝ աստէն կե-*

*նաց գլխաւոր հրապոյրն է ինձ համար, քանի որ հրեշտակաց թեւերու ստուերն ինչ ոչ ունի «թանձրաթախիծ», քանի որ կող մ'է կորզեալ՝ կինն, արդիւնք աւազակութեան աստուածային, հաստատութիւն եւ ամբաստանութիւն Արարչին, բարիք պարգեւեալ չարեօք, չար իսկապէս և աստուածապէս, է՞ր քեզ ի մասնաւորի չարն անմատոյց համարիմ, Սիրունի: Ո՞չ ապաքէն այսու բացառութեամբ զքեզ թշնամանած պիտի լինէի:*

*Յանգետս սակայն թշնամանած կամ խոցած եմ զքեզ՝ թուի՝ յընթերցումն տալով քեզ* Ասօլֆն*: Ո՞վ է, ի՞նչ ունի Աստոլֆ: Վշտի դիւցազուն մ'է և կամ վշտի պարտեալ մ'է նա անշուշտ: Այդպիսի տպաւորութիւն մը թողած է յիս. այդ պատճառաւ տուի քեզ այդ վէպն: Հոլով ամեր առաջ կարդացած ըլլալով զայն, չեմ յիշեր որոշ կերպիւ կամ մանաւանդ գրեթէ բնաւ չեմ յիշեր՝ թէ ինչ ծագում ունեցաւ և ի՛նչ բարեշրջում կրեց սէրն այդ գրքին դիւցազանց: Ուստի* Ասօլֆի *ընտրութիւնն պէտք չ'է վերագրուի խորհրդոյ մը կամ թաքուն ինչ խորհրդոյ, ինչ որ այս պահուս քեզ կը զբաղեցնէ փափկագին անձիդ նկատմամբ, առողջութիւնդ է այն. նաեւ հրատարակումն Նիրվանայի նամակիդ որ կը զգամ թէ իր պարունակութեան —այլ ոչ իր ոգւոյն— հակառակ ազդեցութիւն յառաջ բերած է ու պիտի բերէ*

(քանզի հաստուածդ այդ յաւէտ պիտի կարգացուի)։ Ինչ որ իբրև եղծ մը գրեցիր Անէացման վարդապետութեան, զքեզ ահա քըրմուհի կը կացուցանէ Նիրվանայ կամ անդրանկափառ քրմուհին զքեզ կացուցանէ Նիրվանայ։ Բերկրանքս անպատում է. կինն ահա կը նուիրագործէ Զարի գործն, ում նուիրած եմ անիծապա՛րտ իմ գրիչս։

Երանութիւն կը զգամ այն յուսոյն մէջ թէ մերժելէ հեռի գերազանց տիտղոսն այն քրմուհւոյ, նուիրական ու եզական պաշտօնդ պիտի կատարես Դպրութեանց տաճարին մէջ, յորում կը պատարագէ խորհրդազգաց երկրպագուդ՝ ԵՂԻՍԱՆ։

## XXVI

ԻՃԱՏԻԷ, 21 Յունիս

Սրբո՛ւհի,

Տարօրինակ բանաստեղծի յիմարակա՜ն տենչե՛րս... պէտք է՞ր որ բաւական իմաստով անուէր զայնս, և տրտմագին բանիւքդ կեղեքէիր սիրտս, զոր պատառ պատառ կ'ընէ հազն անողոք հէ՜ք մօրկանս...

Երկուշաբթի կատղեցաւ մօրս հազն, և երկու օր վայրկեան մը չը կրցայ հեռանալ քովէն. այս գիշեր գրեթէ մինչև լոյս հազաց. առաւօտուն մեղմացաւ հազն: Եկան բժիշկներն ալ՝ Փէշտիմալճեան ու Սեղբոսեանն ի միասին, և գիս յուսադրեցին: Գիշերն յուսահատած էի մօրս բժշկութենէն, և հոգեկան վիճակս աննկարագրելի էր:

## XXVII

*Իճատիէ*, 19 *Հոկտեմբեր*

*Սրբուհի՛,*

*Վիշտ՝ առաջին բառն եղաւ զոր անցեալ օր արտասանեցիր՝ տեսնելով զիս։ Յետոյ գիր մը տուիր ինձ զոր յոյժ նեղուեցայ չը կրնալով իսկոյն կարդալ, քանզի վշտի արտայայտութիւն կը սպասէի գտնել այդ գրոյն մէջ ալ։ Շոգենաւ չը մտած ընթերցայ նամակդ։ Յանոսի նման՝ կրկին ունէր երես այն, մթին՝ մին ու պայծառ՝ միւսն։ Եւ գոհ եղայ յոյժ. եթէ համակրութեանս անարատագոյն մասն անդունդին կամ մութին համար է, գլխովին անհամակիր չեմ լուսոյն կամ լուսահանգէտ զուարթութեան։ Մանաւանդ երբ լոյսն ստուերով կը շղարշի, երբ յաւելուածոյ հրապոյր մը փոխ կ՚առնու լոյսը մութէն, երբ լոյսն այնպէս հոգւոյս անյագ սեւաքաղձութիւնը կը գգուէ, լուսոյն ե՛ւս առաւել կը յարիմ յայնժամ և չը գիտեմ թէ այ՛ն աւելի կը սիրեմ, սեւ խաչափա՞յտն յոգնախօս սուրբ ստուերաց յատակին վրայ, թէ՞ սեւ խաչափայտն ի լուսահոծ լանջս անդ սիրատարփ աղջկան...։*

Անիծեա՛լ խաչն. ահա նորէն գրչիս տակ եկաւ, անտարակոյս քանզի ուսիս վրայ է այն յաւիտեան։ Կը հարցնես ինձ թէ վիշտ չունի՞մ որ այլեւս չեմ խօսիր քեզ անձիս վրայ, չեմ խօսիր քեզ՝ մտերմուհւոյն՝ ներքին կեանքիս վրայ։ Վի՜շտ, Սրբուհի՛, եւ միթէ ուրիշ բա՛ն ունի՞մ ես. եւ միթէ ուրիշ բան ունի՞ս դուն։

Օր մը, Արեւելքի խմբագրատունն էի. խմբագրաց մին ի Բերա ներկայ գտնուած էր liseuse de penséeի մը ներկայացման կամ նիստին. եւ կը հարցնէր ինձ թէ՝ հայերէն ի՞նչ պիտի կոչէինք այդ արուեստագէտն կամ արուեստագիտուհին։ Խոհընթերցիկ պատասխանեցի։ Բառս ընդունուեցաւ ու գործածուեցաւ։ Բառս ընդունի՞ն կամ ո՛չ, Յաւընթերցիկ մ'ես դու, ցաւած սի՛րտ, տառապեալ հոգի՛, որ վիշտ գրելու, դիմաց վրայ վիշտ կարդալու համար գերավարժ աչքեր ունիս։ Աւաղելի՜ քրոջս ծաւի աչկունք քեզ չը պիտի վայլէին. վիշտ ընթերցող վհուկի մը՝ սեւ աչեր կը վայլեն, եւ վիշտ կարդալէն ե՛ւս քան զեւս կը սեւնան տառապանաց վհուկին աչկունք։

Կ'ուզե՞ս որ բան մըն ալ քեզ յայտնեմ ինչ որ ամէն շաբաթ (կամ ըսենք՝ ամէն ուրբաթ, չարչարանա՛ց օր) կը կարդաս վշտապատում ճակտիս վրայ, վշտահամակ հոգւոյս

խորն ։ Ո՜հ, ինձ խնայէ՛, Սրբուհի ։ Թող յաւիտեան. . . . . . . . . . . . . :

Յ. Գ.— Այլեւս դուն ուրեք կը տեսնեմ մեր խորհրդաւոր Խաչկեանն. այլ սակայն յաճախ աչացս առջեւ կուգայ խոնարհաւէր գլուխն այն, զոր ծակօղ զոյգ սրաչող աչքերէն ցայտող կայծակունք չեն բնաւ խոնարհաւէր. երկնից կայծակին հակառակ ուղղութեամբ կը վազեն, գոգցես պռնել և լափելու, լզելու համար զՈՐ ԷՆ յաւէրժ, ոսոխն ՈՉ ԷԻՆ, անողոք ախոյեանն Նիրվանային ։ Այդ տղան, երբ առաջին անգամ տեսայ կեդրոնական վարժարանին մէջ, հասարակ մանկանացուէ վար բան մը մ՚երեւցաւ ինձ. և այժմ անմահից դասէն ալ գերիվեր էակ մ՚ինձ կը թուի ։ Խանդրու մթութեան ու խորանին խորախորհուրդ ստուերաց մէջ իրեն կը հետեւիմ երեւակայութեամբ, կ՚աներեւութանայ, մութին հետ կը նոյնանայ, այլ ահա երկնածիր բեկբեկ սրոյ մը նման կայծակ մը, զուգեակ զուգահեռական երկնածիր կայծակունք՝ կը մատնեն իր ներկայութիւնն. հոն, աչացս տակ, սուրբ տաճարին ստուերաց մէջ թաքուն, կը դաւադրէ անո՛ր դէմ որ է, ԱԻՄին դէմ կը դաւադրէ, որպէս զի հաստատէ Նիրվանայի թագաւորութիւնն ։

Երկու կիրակի յաջորդաբար գրական անձանց հետ՝ ոյք այցելութեան եկած էին ինձ՝

բանաստեղծագրական անձդ առարկայ եղաւ՝ երկար մեր խօսակցութեանց։ Նախորդ կիրակին Սիմոն Գարամաճեանն եկած էր ի ծաղկաքաղ, աշնան եղանակին համար շատ գունագեղ և հեշտաբոյր ծաղիկներ քաղեց՝ գրադարանէս, ուր մանաւոր մասունքանուէր տեղ մը գրուած են գրութիւնքդ։ Գարամաճեանի Հատընտիրն, այս երկրորդ հատորն յոյժ ճոխ պիտի ըլլայ,— չը պիտի ըսեմ մանաւանդ քու հատուածոյդ պատճառաւ՝ փափկագոյն համեստութիւնդ չը վիրաւորելու համար։ Այս կիրակի ալ Մամուրեան եկաւ Պէրպէրեանի հետ. երեսին գովեստներ ըրի շատ մը, սակայն գգուելու տեղ խոցեցի թերեւս այդ ամենամեծ գրական անձնաւորութիւնը. շատ աւելի յաջողակութեամբ ըրի Արեւելեան Մամլոյ խմբագրապետին ներբողն անցեալ օր ի Կեդրոնական վարժարան իր այցելութենէն յետոյ երբ բարձրագոյն դասու տղայք՝ խնդրեցին յինէ՝ դաս խօսելու տեղ՝ խօսիլ մեծանուն հիւրին վրայ. յանպատրաստից բանախօսութիւն մ՚ըրի, յորում անտարակոյս պիտի ձախողէի՝ եթէ ներկայ ըլլար բանախօսութեան առարկայն։ Ես յաւէտ ձախող եղած եմ անձ մ՚երեսն ի վեր գոված ատենս։ Հարցուցի Կիրակի թէ կը ճանչնա՞յ զքեզ. յիշեց և յայտնեց թէ տեսնուեր էք, անցեալ օր ի Հասգիւղ։

Նոյն

## XXVIII

*Սիրունի ,*

*Գերագոյն փափկութեամբ մը կամիս որ վախճան տամ թղթակցութեանս, զի թերեւս առողջութեանս կրնայ վնասել սա։ Կամքդ թող ըլլայ։ Զքեզ չէի յիշեր միայն՝ քեզ թղթած պահուս։ Այսուհետեւ ալ այնպէ՛ս պիտի ըլլայ, և յաւիտեա՛ն ......։*

